3 КП2(47·925)



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2·1979

A.R.A.R.@

# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն ապագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




digitised by A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ



© Издательство ЦК КП Армении. «Ленинян угиов», 1979.

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ «ԹԱՅՄ» ՀԱՆԴԵՍԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Ինչպես արդեն հաղորդվել է, ամերիկյան «Թայմ» հանդեսի խմբագրությունը դիմել էր ընկեր Լ. Ի. Բրեժնևին՝ խնդրելով պատասխանել մի շարք հարցերի: Ստորև հրապարակվում են ընկեր Լ. Ի. Բրեժնևի պատասխանները հանդեսի խմբագրության հարցերին:

**Հարց:** Դուք ինչպե՞ս եք գնահատում սովետա-ամերիկյան հարաբերությունների վիճակը՝ հաշվի առնելով ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման բանակցություններում ձեռք բերված առաջադիմությունը և բարձր մակարդակի հնարավոր հանդիպումը:

**Պատասխան:** Նախ կկամենայի ձեր հանդեսի միջոցով ամերիկյան ժողովրդին բարեմաղթություններ հղել սկսված նոր տարում: Թե այս տարին և գալիք տարիները որքանով իսկապես և՛ բարի, և՛, ամենից առաջ, խաղաղ տարիներ կլինեն, մեծապես կախված է մեր երկու երկրների ջանքերից: Իմ կողմից կարող եմ ասել, որ Սովետական Միությունը այսուհետ ևս անշեղորեն կգործի համագործակցության և ազնիվ պարտնյորության ոգով:

Մենք և դուք 1979 թվականը թևակոխեցինք, կարելի է ասել, դրական փորձաքեռով: Հարձակողական ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման նոր համաձայնագրի ուղղությամբ կատարվող աշխատանքն ավարտվելու վրա է, թեև, ակնհայտորեն, դեռ որոշ ժամանակ կպահանջվի դիրքերի վերջնական համաձայնեցման համար: Կարծում ենք, որ հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքը, որը ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը ընդունում են որպես ելակետային սկզբունք, կթելադրի ճիշտ լուծումներ, և մենք պրեզիդենտ Քարտերի հետ կկարողանանք ոչ հեռու ապագայում պայմանավորվածությունը վավերացնել մեր ստորագրություններով: Վերջ տալ սպառազինությունների անզուսպ մրցավազքին, ապահովել մեր պետությունների անվտանգությունը և ամրապնդել միջազգային խաղաղությունը ռազմական դիմակայության առավել ցածր մակարդակի վրա,— բուն կյանքի կողմից առաջադրված այս խնդիրն արժանի է ջանքեր գործադրելու:

Ընդհանուր առմամբ, վերջին մի երկու տարում սովետա-ամերիկյան հարաբերություններում, ուղղակի ասենք, ուրախալի մոմենտներ քիչ են եղել: Միանգամայն անկեղծորեն կասեմ, մեզ համար երբեմն նույնիսկ դժվար է հասկանալ Վաշինգտոնի համառ ձգտումը՝ իր շահը որոնել ուրիշների անշահավետության մեջ: Չէ՞ որ այդ ամենն արդեն, այն էլ բազմիցս, ամերիկյան քաղաքագետները փորձել են «սառը պատերազմի» ժամանակաշրջանում: Սակայն օբյեկտիվ ռեալությունը ԱՄՆ-ին հանգեցրել է այն հետևության, որ անհրաժեշտ է համագործակցել ՍՍՀՄ-ի հետ, հատկապես միջուկային պատերազմ թույլ չտալու և աշխարհի տարբեր շրջաններում առկա կոնֆլիկտային իրավիճակները կարգավորելու ասպարեզում: Հենց այդ կերպ գործելու մեր երկուստեք կամքը այն ժամանակ արձանագրվեց համապատասխան փաստաթղթերում, որոնք մենք Սովետական Միությունում բարձր ենք գնահատում և որոնց մեջ մենք լավ հիմք ենք տեսնում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերություններում դեպի լավը հաստատուն ու տևական շրջադարձ կատարելու համար:



digitised by A.R.A.R.@

Դե իսկ ուժ առած պեկինյան վարչակարգը որպես ՆԱՏՕ-ի քաղաքականության գործիք օգտագործելու, նրա ռազմատենչ նկրտումները Արևմուտքի համար ցանկալի ուղղության նպատակամղելու դիտավորությունները, ներեցեք ինձ, առնվազն անձնապաստան միամտություն են: Բավական է վերհիշել, թե արևմտյան տերությունների համար ինչով ավարտվեց նույն այդ մյունխենյան քաղաքականությունը: Մի՞թե պատմության դասերն այդքան շուտ են մոռացվում:

Ինչ վերաբերում է Չինական Ժողովրդական Հանրապետության հետ Սովետական Միության հարաբերություններին, ապա մենք այդ երկրի նկատմամբ չունենք ո՛չ տերիտորիալ, ո՛չ էլ այլ հավակնություններ և ոչ մի օբյեկտիվ խոչընդոտ չենք տեսնում վերականգնելու ոչ միայն պարզապես լավ, այլև բարեկամական հարաբերությունները,— իհարկե, եթե ՉԺՀ-ի դիրքն ավելի խելացի և խաղաղասիրական դառնա:

Պեկինից մերթ ընդ մերթ հայտարարություններ են լսվում այն մասին, թե իբր բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության 1950 թվականին կնքված սովետա-չինական պայմանագիրը «կորցրել է ամեն մի նշանակություն», վերածվել «սովորական թղթի կտորի», և նման այլ բաներ: Ըստ երևույթին, չինական ղեկավարները մեզ հրահրում են խզելու այդ պայմանագիրը: Կարող եմ ասել, որ մենք պրովոկացիայի չենք ենթարկվի: Մենք երբեք մեր կամքով չենք պատռի այն փաստաթուղթը, որը մարմնավորում է ՍՍՀՄ-ի և Չինաստանի ժողովուրդների բարեկամությունը: Իսկ եթե Պեկինի ղեկավարները կդիմեն այդպիսի քայլի, ապա նրանք իրենց վրա կվերցնեն իրենց երկրի ժողովրդի հանդեպ, ամբողջ աշխարհի խաղաղության և պրոգրեսի ուժերի հանդեպ պատասխանատվության ամբողջ ծանրությունը:

**Հարց:** ԱՄՆ-ում բազմապիսի մեկնաբանություն է տրվում «դետանտ» բառին, որը համապատասխանում է ռուսերեն «ռազրյադկա» բառին: Ձեր կարծիքով, ո՞րն է այդ տերմինի քաղաքական կոնկրետ բովանդակությունը, հատկապես ռեգիոնալ պրոբլեմների, օրինակ, Աֆրիկայի և Մերձավոր Արևելքի պրոբլեմների առնչությամբ:

**Պատասխան:** Երբ մենք ասում ենք «լարվածության թուլացում» կամ հակիրճության համար՝ պարզապես «ռազրյադկա», նկատի ունենք միջազգային հարաբերությունների մի վիճակ, որը հակադիր է այդ հարաբերությունների այն վիճակին, որն ընդունված է անվանել «սառը պատերազմ» և որին բնորոշ էր մշտական լարվածությունը, որն սպառնում էր ամեն րոպե վերածվելու բացահայտ կոնֆլիկտների: Այլ խոսքով, լարվածության թուլացումը, նախ և առաջ, «սառը պատերազմի» հաղթահարումն է, անցումը պետությունների միջև հավասարակշռված հարաբերությունների: Լարվածության թուլացումը պատրաստակամությունն է տարաձայնություններն ու վեճերը լուծելու ո՛չ թե ուժով, ո՛չ թե սպառնալիքներով և զենք շաչեցնելով, այլ խաղաղ միջոցներով, բանակցությունների սեղանի շուրջը: Լարվածության թուլացումը որոշակի վստահություն և կարողություն է՝ հաշվի առնելու միմյանց օրինական շահերը: Համառոտակի այսպիսին է լարվածության թուլացման մեր ըմբռնումը:

Մենք մեր կողմից վարում ենք ակտիվ գիծ այն ուղղությամբ, որպեսզի լարվածության թուլացման պրոցեսն ըստ ամենայնի ամրապնդվի և տարածվի աշխարհի բոլոր շրջանների վրա, այդ թվում, իհարկե, թե՛ Աֆրիկայի, թե՛ Մերձավոր Արևելքի վրա: Սակայն անիրավացի և ոչ ռեալիստական կլիներ սպասել, թե այդ շրջանների կամ որևէ այլ շրջանի ժողովուրդներն իրենց օրինական իրավունքների համար պայքարից կհրաժարվեն հանուն այն բանի, որ ոմանք թյուր մեկնաբանություն են տալիս լարվածության թուլացում հասկացությանը:

Եթե խոսելու լինենք, օրինակ, Մերձավոր Արևելքի մասին, ապա լարվածության թուլացման շահերին հակասում են բնավ ոչ արաբական ժողովուրդների պայքարն իրենց պատկանող, բայց Իսրայելի կողմից զավթված հողերի



վերադարձման համար և հանուն իրենց սեփական պետությունն ստեղծելու՝ պաղեստինցիների իրավունքի, և ոչ նրանց գործողությունները, ովքեր պաշտպանում են արաբների այդ արդարացի պահանջները: Մերձավոր Արևելքում լարվածության թուլացման շահերին հակառակ են գործում հենց նրանք, ովքեր կանգնած են ագրեսորի կողմը, խրախուսելով նրա էքսպանսիոնիստական նկրտումները:

Նույնը վերաբերում է նաև Աֆրիկայի հարավում տիրող իրավիճակին: Միջազգային լարվածության թուլացմանն սպառնացող վտանգի աղբյուր է այն քաղաքականությունը, որն ուղղված է այնտեղ գաղութային-ռասիստական ճնշումից ազատագրվելու համար, նեոգաղութատիրության դեմ հանուն անկախության և սոցիալական առաջադիմության պայքարող ժողովուրդների դեմ, և բնավ ոչ ինքնին ժողովուրդների պայքարը իրենց իրավունքների համար:

**Հարց:** Քարտերի վարչակազմի ներկայացուցիչները հաճախ քննադատել են Սովետական Միության ներքին քաղաքականությունը, ընդսմին վկայակոչելով Հելսինկիի Եզրափակիչ ակտը: Ո՞ր չափով է այն կիրառելի Սովետական Միության ներքին քաղաքականության նկատմամբ:

**Պատասխան:** Հելսինկիում ստորագրված փաստաթղթի վերաբերյալ մեր տեսակետը կարելի է արտահայտել միանգամայն հակիրճ ու կտրուկ. ՍՍՀՄ-ը հանդես է գալիս Եզրափակիչ ակտի բոլոր մասերի լիակատար կենսագործման օգտին: Ի դեպ, Սովետական Միությունն աշխարհի միակ երկիրն է, որի Սահմանադրության մեջ վավերագրված են միջպետական հարաբերությունների այն բոլոր տասը սկզբունքները, որոնք արձանագրված են նաև Եզրափակիչ ակտում:

Սակայն չպետք է մոռանալ, որ Եզրափակիչ ակտը մի փաստաթուղթ է, որը կարգավորում է հենց միջպետական հարաբերությունները : Նրա դրույթներից ոչ մեկը մի խումբ պետությունների չի տալիս մյուսների ներքին կյանքին միջամտելու, ուրիշի գործերին խառնվելու իրավունք: Ավելին, Եզրափակիչ ակտն ստորագրած պետությունները պարտավորություն են ստանձնել «հարգել իրենց քաղաքական, սոցիալական, տնտեսական և կուլտուրական սիստեմները ազատորեն ընտրելու և զարգացնելու միմյանց իրավունքը, ինչպես նաև իրենց օրենքներն ու վարչական կանոնները հաստատելու իրավունքը»:

Այժմ ես չեմ ուզում բանավեճի մեջ մտնել այդ հարցերում ամերիկյան վարչակազմի գծի առթիվ: Թեև, հավատացեք, կարելի կլիներ շատ բան ասել և հարցեր տալ այդ առնչությամբ, մասնավորապես նկատի ունենալով ուրիշ պետությունների ներքին գործերին ԱՄՆ-ի միջամտությունը ամբողջ աշխարհի աչքի առաջ:

---

digitised by A.R.A.R.@

# «ԽՈՊԱՆԻ» ԴԱՍԵՐԸ

«...Կա երկու բան, որոնք միշտ սրտիս առավել մոտիկ են եղել ու կլինեն, միշտ եղել են ու կլինեն իմ գլխավոր հոգսերի առարկան: Դա ժողովրդի համար հացն է և երկրի անվտանգությունը»:

**Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ**

ԱՅՍ ՄԵՋԲԵՐՈՒՄՆ ԱՐՎԱԾ է ընկեր Լ. Ի. Բրեժնևի 1978 թ. դեկտեմբերի 19-ի ելույթից, երբ նրան հանձնվում էր հայրենիքի բարձրագույն պարգևը՝ Լենինի շքանշանը և Սովետական Միության Հերոսի «Ոսկե աստղ» երրորդ մեդալը: Պարզ, անպաճույճ, բայց խորիմաստ այդ խոսքերի մեջ ամփոփված են մեծ կյանքի մեծ հոգսերը: Հիրավի, ի՞նչը կարող է ավելի վեհ ու ազնիվ լինել, քան այն, երբ մարդը, առավել ևս ականավոր քաղաքական ու պետական ղեկավարը իր հոգսերի գլխավոր առարկան համարում է հանապազօրյա հացը և անվտանգ ու խաղաղ կյանքը՝ նախահիմքերը ամենայն բարիքի, ժողովրդի և երկրի գոյության ու բարգավաճման: Իսկ եթե ավելի լայն չափանիշներով դատելու լինենք, ապա դժվար չէ նկատել, որ խոսքը, վերջին հաշվով, այստեղ ամենամարդասիրական հասարակարգի դավանած բուն սկզբունքներին է վերաբերում. հացն ու խաղաղությունը երկրի ղեկավարի գլխավոր հոգսերի առարկան կարող են լինել միայն այն հասարակարգում, որը որդեգրել է մարդկային բազում սերունդների ամենավսեմ իդեալները և այդ իդեալների իրականացման մեջ է տեսնում իր կոչումը:

Մեր բովանդակ երկրում այսօր հացի մասին մեծ զրույց է սկսվել: Եվ դրա համար հիմնավոր ու ծանրակշիռ առիթ դարձավ Լ. Ի. Բրեժնևի հուշերի նոր գիրքը՝ «Խոպանը»: Իր վավերագրական պատումների երրորդ գիրքը Լ. Ի. Բրեժնևն սկսում է այսպիսի թևավոր խոսքով՝ «Որտեղ հաց, այնտեղ էլ երգ...», խոսք, որ բնաբանի նման որոշում է հուշերի հիմնական բովանդակությունը: Այդ գիրքը դյութիչ մի ասք է հանապազօրյա հացի ու նրա արարողների մասին, այն մասին, թե ինչպիսի վճիտ ակունքներից են սնվում հացի հանդեպ սովետական մարդու բարոյական վսեմ զգացումները: «Հացի նկատմամբ առանձնահատուկ, գուրգուրոտ, սրբազան վերաբերմունքն է հատուկ իր գերբին հասկեր կրող երկրի քաղաքացիներին,— գրում է Լ. Ի. Բրեժնևը:— Կարող եմ ասել, որ այդ վերաբերմունքը երիտասարդ հասակից ծանոթ է եղել և ինձ»:

Եվ այդ «ծանոթ վերաբերմունքը» տարիների ընթացքում արմատներ է նետել կոմունիստի հոգում, վերաճել սիրո, ապա երկրի ղեկավարի համար դարձել գլխավոր հոգսերի առարկա: «Խոպանը» այդ նվիրական սիրո վավերագիրն է:

Գրքի էջերից ընթերցողի առջև հացի պրոբլեմը ծառանում է իր ողջ սրությամբ. 50-ական թվականների սկզբներին «հացի վիճակը լուրջ տագնապ էր առաջացնում: Երկրում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից չէր անցնում 9 ցենտներից: 1953 թվականին մթերվեց 31 միլիոն տոննայից մի փոքր ավելի հացահատիկ, իսկ ծախսվեց ավելի քան 32 միլիոն տոննա: Այն ժամանակ մենք ստիպված եղանք մասամբ օգտագործել պետական ռեզերվները»:

Վիճակից դուրս գալու համար հարկավոր էին շտապ ու վճռական միջոցներ,



և կուսակցությունը առաջին պլան մղեց ցանքատարածությունների զգալի ու արագ ընդլայնման խնդիրը: Իսկ դա, ինչպես նշում է հեղինակը, հնարավոր էր միայն արևելյան խոպան հողերի հաշվին: ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը հաստատեց մի ընդարձակ ծրագիր, որը կոչված էր վերացնելու գյուղատնտեսության ղեկավարման գործում եղած թերությունները: Առաջնահերթ կարևորություն էր ստանում հատկապես գլխավոր խնդրի լուծումը՝ հացահատիկի արտադրության շուտափույթ ավելացումը: 1954 թվականին յուրացնելու համար նախատեսված 13 միլիոն հեկտար խոպանը հաջողության դեպքում արդեն այդ նույն տարվա աշնանը կարող էր տալ 800—900 միլիոն փութ ապրանքային հացահատիկ, իսկ դա պատկառելի հավելում կլիներ երկրի ծայրահեղ լարված հացահատիկային հաշվեկշռին:

Եվ սկսվեց խոպանի էպոպեան: «Գլխավորը, որ մեզ հանձնարարվում էր,— գրում է Լ. Ի. Բրեժնևը,— խոպանի հերկումն ապահովելն էր: Ես գիտեի, որ ինձ չափազանց դժվարին գործ է սպասվում: Եվ ամենից առաջ հարկավոր էր գտնել այդքան կարևոր խնդրի կատարումը կազմակերպելու ճիշտ լուծում: Խոսքը վերաբերում էր ոչ միայն մի հանրապետության հացահատիկային տնտեսության վերելքին, այլև հացահատիկի պրոբլեմի արմատական լուծմանը ամբողջ Սովետական Միության մասշտաբներով:

Արդեն աշնանը խոպանից պետք է հաց վերցնեինք: Անպայման այդ տարվա աշնանը:

Եվ այսպես, իմ կյանքը կրկին, արդեն ո՛րերորդ անգամ, շեշտակի շրջադարձ ապրեց»:

Այդ կյանքը իր շրջադարձերով զարմանալի ճշգրտությամբ համընկնում է երկրի պատմության անցումային փուլերին: Պատերազմ, պատերազմից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնում, և ահա այդ ամենից հետո՝ խոպան: Եվ հուշագրություններն էլ մեկը մյուսի տրամաբանական շարունակությունն են՝ «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան»:

ԻՆՉՊԵՍ ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ նախորդ երկու գրքերը, «Խոպանը» ոչ միայն հերոսական սխրանքների պանծալի տարեգրություն է, այլև կուսակցական աշխատանքի փորձի հանրագիտարան: Մեր կուսակցության ու պետության ղեկավարի վավերագրական պատումների նոր գիրքն իր հավաստիությամբ, վառ պատկերավորությամբ, քաղաքական, տնտեսական և սոցիալական երևույթների խոր վերլուծությամբ, ընդհանրացումներով ու հետևություններով խորապես ուսանելի է կուսակցական, սովետական, տնտեսական, կյանքի ուզածդ բնագավառի աշխատողի համար:

Մեծ հացի համար մղված ճակատամարտի պատմությանն առանձնահատուկ արժեք է հաղորդում այն, որ գիրքը գրված է մի մարդու կողմից, որին խոպանականները համարում էին խոպանի ճակատի գլխավոր հրամանատար, որի անխոնջ աշխատանքը, կազմակերպչական վիթխարի գործունեությունը մեծ չափով նպաստել են Ղազախստանի տափաստանների յուրացմանը, նոր հողերի բերքատվության հետագա բարձրացման միջոցառումների իրագործմանը: «Խոպանը» ոչ թե էպոպեայի սոսկ մասնակցի, այլ երկրի համար կենսականորեն կարևոր մեծ գործի կազմակերպչի հուշագրություն է: Գիրքն ընթերցողի առջև բացում է հացի համար սովետական մարդկանց հերոսական ճակատամարտի վիթխարի համայնապատկերը: «Խոպանում,— գրում է Լ. Ի. Բրեժնևը,— միլիոնավոր սովետական մարդիկ շարունակում էին կատարել հեղափոխության փորձը, պատմական նոր պայմաններում բազմապատկում էին նրա նվաճումները, ստեղծում զարգացած սոցիալիզմի հաղթական կառուցման կենդանի փորձը»: Ամբողջ գրքով կարմիր թելի պես այն միտքն է անցնում, որ խոպանի գլխավոր հերոսը սովետական մարդն է՝ ժողովրդի ու հայրենիքի գործին անմնացորդ նվիրվածությամբ ծառայելու իր պատրաստակամությամբ, դժվարությունները դիմակայելու իր աներևակայելի տոկունությամբ, կուսակցության հանդեպ իր աներեր հավատով:

Սովետական մարդու, նրա ստեղծագործական ուժի ու վառ հայրենասիրու-



digitised by A.R.A.R.@

թյան նկատմամբ կուսակցության ունեցած մեծ վստահության պերճախոս ապացույց էր խոպանի նվաճման բուն ծրագրի առաջադրումը և դրա իրականացման նպատակով համաժողովրդական պայքարի ծավալումը։ Վճռական այդ գործոնը անտեսելու պայմանով միայն բուրժուական թերթը կարող էր գրել այսպիսի չարագուշակ տողեր. «Խոպանի վայրի պայմաններում մարդը չի կարող գոյատևել։ Ահա թե ինչու կարելի է հանգիստ լինել. խոպանը այդպես էլ կմնա Ռուսաստանի ստամոքսի մեջ որպես չմարսված պատառ»։

Իսկ խոպանը երկար սպասել չտվեց, նա հենց առաջին տարում հերքեց այս ու նման այլ չարամիտ գուշակությունները։ Խոպան անունը կրող դարավոր ամրոցին, ինչպես գրում է Լ. Ի. Բրեժնևը, «մենք տիրեցինք ոչ թե երկարատև պաշարումով, այլ սրընթաց ցատկով, հերոսական գրոհով»։ Արդեն 1954 թվականին երկրում հերկվեց 19 միլիոն հեկտար հող, նախատեսված 13 միլիոնի փոխարեն։ Հողերի հերկման պլանը գերակատարեց նաև Ղազախստանը։ Հանրապետության ցանքատարածությունները կրկնապատկվեցին և հենց այդ նույն տարում հասան 20 միլիոն հեկտարի։ Առաջին իսկ տարում երկիրը հացահատիկի լուրջ հավելում ստացավ խոպանից։

Հացահատիկի՝ այդ ամենակենսական պարենամթերքի ավելացման բացառիկ կարևոր խնդիրը կարճ ժամանակամիջոցում լուծելու վերաբերյալ կուսակցության կոչին ջերմորեն արձագանքեցին եղբայրական բոլոր հանրապետությունները, որոնք ամենաակտիվ մասնակցությունը ցուցաբերեցին Ղազախստանում, Ալթայում, Ուրալում և Հեռավոր Արևելքում նոր հողերի յուրացմանը, երկրի արևելքում հացահատիկի արտադրության խոշոր բազայի ստեղծմանը, մարդկության տնտեսական պատմության մեջ հացի համար մղված ամենատպավորիչ ճակատամարտին։

Խոպանի յուրացմանը ներգրավվեց մեր ամբողջ երկիրը։ Կուսակցությունն այնտեղ ուղարկեց հազարավոր կոմունիստների՝ արտադրության առաջավորների ու հմուտ կազմակերպիչների, բանվոր դասակարգը հացի ճակատ ուղարկեց իր լավագույն ներկայացուցիչներից շատ-շատերին, կոմերիտմիության ուղեգրերով խոպան հողերը մեկնեցին մոտ կես միլիոն պատանիներ ու աղջիկներ, առաջին խոպանականների շարքերում մեծ թիվ էին կազմում բուհերի ու տեխնիկումների շրջանավարտները, սովետական բանակից զորացրված ռազմիկները։ Կուսակցության կոչին ջերմորեն արձագանքեց և խոպանի նվաճման մեծ սխրանքի ակտիվ մասնակիցը դարձավ նաև սովետական մտավորականությունը։

Սովետական Հայաստանի աշխատավորները այսօր գոհունակությամբ նշում են, որ իրենք ևս իրենց ավանդն ունեն խոպան հողերի յուրացման գործում։ Հանրապետության բանվոր դասակարգը, երիտասարդությունը առաջիններից մեկը արձագանքեցին կուսակցության կոչին։ 1954—1958 թվականներին խոպան մեկնեցին հազարավոր մեխանիզատորներ, վարորդներ, որմնադիրներ, հյուսներ, Ղազախստանի անծայրածիր տափաստաններում մկրտություն ստացան մեր հանրապետության 15 հազար ներկայացուցիչներ, որոնց ուժերով կատարվեց տասնյակ միլիոնավոր ռուբլու աշխատանք։ Հայաստանի արդյունաբերությունը ակտիվորեն մասնակցում էր խոպանի համար տեխնիկան ու մյուս միջոցները ժամկետից շուտ արտադրելու և մատակարարելու հայրենասիրական շարժմանը։ Շեֆական օգնության կարգով խոպանի շրջաններն ուղարկվեցին բազմաթիվ շարժական էլեկտրակայաններ, հաստոցներ, զանազան սարքեր։

Խոպանը, բնականաբար, շինանյութերի, հատկապես աղյուսի մեծ կարիք ուներ։ «Ես դիմեցի մի շարք հանրապետությունների ղեկավարների,— իր գրքում վերհիշում է Լ. Ի. Բրեժնևը։— Եվ հարկ է ասել, որ մեզ լավ օգնեցին։ Աղյուս ստացվեց Հայաստանից, Վրաստանից, Էստոնիայից և ուրիշ շատ վայրերից»։

Հարկ է նշել, որ խոպանում վճռվում էր ոչ միայն հացի պրոբլեմը։ Պակաս կարևոր չէր նաև հարցի քաղաքական ասպեկտը։ Հայտնի է, որ մեր գաղափարական հակառակորդները ձանձրացնելու չափ շատախոսում են այն մասին, թե սոցիալիզմը, իբր, անկարող է լուծել գյուղատնտեսության վերելքի խնդիրը։ Խոպանը պետք է զրկեր նրանց նաև պրոպագանդիստական այդ «փաստարկից»։



Հիշենք, թե Աթբասարի շրջկոմում հրավիրված խորհրդակցության ժամանակ Լ. Ի. Բրեժնևը ինչպիսի խոսքերով է դիմում ներկաներին. «Այստեղ,— ասում է նա,— բերվեցին այսպես ասած գյուղատնտեսական և տեխնիկական փաստարկներ և ոչինչ չասվեց հարցի քաղաքական կողմի մասին։ Մինչդեռ հարկավոր է հաշվի առնել ոչ միայն հենց այս տարի խոպանում հացահատիկ ցանելու հնարավորությունը, այլև դրա անհրաժեշտությունը։ Դա ոչ միայն տնտեսական անհրաժեշտություն է, դա նաև քաղաքականության գործ է։ Թող ամբողջ աշխարհը մեկ անգամ ևս իմանա, որ մենք՝ կոմունիստներս, ընդունակ ենք խոշորագույն խնդիրները լուծելու կարճ ժամանակի ընթացքում»։

ՏՆՏԵՍԱԿԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ՍՈՑԻԱԼԱԿԱՆ մի շարք գործոններով է պայմանավորված խոպանի յուրացումը։ Դրանց թվում խիստ էական է նաև մարդկային գործոնի դերը։ Գիրքը հարուստ է մտորումներով այն մասին, թե ինչպես պետք է աշխատել մարդկանց հետ, ինչպես պետք է նպաստել, պայմաններ ստեղծել, որպեսզի յուրաքանչյուր ոք դրսևորի իր ունակությունները, առավելագույնս օգտակար լինի ընդհանուր գործին։ Խոսելով խոպանում աշխատանքի գլխավոր ուղղությունների, կիրառվող ստրատեգիայի ու տակտիկայի մասին, Լ. Ի. Բրեժնևը այդ ուղղություններից մեկը համարում է «մարդկանց տարասեռ մասսայից համերաշխ, համախմբված կոլեկտիվների ստեղծումը»։ Նման խնդրի լուծումը, բնականաբար, վիթխարի ջանքեր էր պահանջում կուսակցական կազմակերպություններից, քաղաքական աշխատանքի առանցքը դարձել էր մարդկանց այդ հսկայական զանգվածի համախմբումը, գործողությունների կոնկրետ ծրագրով և ընդհանուր նպատակի հստակ գիտակցությամբ նրանց զինելը։

«Խոպանը» մարդու մասին մտորումների ու խոհերի մի հոյակապ գանձարան է, սովետական մարդու նկատմամբ հեղինակի մեծ սիրո իսկական վկայությունը։ Տնտեսական, քաղաքական վիթխարի խնդիրները երբեք ետին պլան չեն մղել մարդկային գործոնը. մարդիկ իրենց փոքր ու մեծ հոգսերով, իրենց կենցաղով, ապրելակերպով, իրենց առօրյա պահանջներով միշտ հեղինակի տեսադաշտում են։ Խոպանը, գրում է Լ. Ի. Բրեժնևը, միայն վարելահող չէ, այն նաև բնակարաններ է, դպրոցներ, հիվանդանոցներ, մանկապարտեզներ, ակումբներ, ճանապարհներ, օդանավակայաններ, գործարաններ, մի խոսքով՝ այն ամենը, ինչ անհրաժեշտ է բնակչության նորմալ կյանքի համար։ Մարդիկ խոպան էին եկել ոչ թե ժամանակավորապես, այլ այստեղ բնակություն հաստատելու մտադրությամբ։ Հետևապես, «խոսքը վերաբերում է մարդկային երջանկության պլանավորմանը։ Յուրաքանչյուրին հարկավոր է տուն, օջախ, հարկավոր է սեր, հարկավոր են երեխաներ»։ Ուրեմն պետք է ժողովրդագրական պրոբլեմները լուծել բանիմացորեն, որպեսզի երիտասարդները գտնեն միմյանց և երջանիկ լինեն։ «Նրանք պետք է հենց երջանիկ լինեն, որովհետև առանց դրա անհնար է երկրի բարօրությունը»։

Ընթերցողը հուզմունքով, սրտի խոր ցավով է կարդում գրքի այն էջերը, ուր պատմվում է առաջին խոպանականներից երկուսի՝ տրակտորիստ Դանիիլ Նեստերենկոյի (որի գրպանում մահից հետո ընկերները հայտնաբերում են Սովետական Միության հերոսի վկայականը) և Լվովի շինարարական ինստիտուտի հեռակա ուսանող Վասիլի Ռագուզովի ողբերգական մահվան մասին։ Թվում է, հեղինակն ընտրել է դեպքերն ու երևույթները բնորոշող ամենասեղմ, տարողունակ, դիպուկ ու միակ ճշգրիտ բառերը և ընդամենը մեկ-երկու պարբերությամբ կարողացել է մարդկանց ներկայացնել այնպես, որ դրանց կերպարները ընդմիշտ մնան ընթերցողի հիշողության մեջ։

«Խոպանը» կոմունիստի գիրք է կոմունիստների մասին։ Հեղինակը ջերմ սիրով է վերհիշում նրանց, ում հետ աշխատել է Ղազախստանի կոմկուսի Կենտկոմում, ում հետ ղեկավարել է խոպանի ճակատամարտը և ձեռք-ձեռքի մարտնչել նոր հողերի նվաճման՝ կուսակցության առաջադրած ծրագրի իրականացման համար։ Խորին համակրանքով է Լեոնիդ Իլյիչը խոսում հատկապես կուսակցության շրջկոմների քարտուղարների՝ այդ մեծ աշխատավորների մա-



digitised by A.R.A.R.@

կատարելագործման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների խնդիրներին։ Ժողովում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։

— «Խոպանի», Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ամբողջ տրիլոգիայի կարևորագույն նշանակությունն այն է,— ասաց Կ. Ս. Դեմիրճյանը,— որ դրանցում համակողմանիորեն ու խորապես բացահայտվում են մասսաների կուսակցական ղեկավարման, սոցիալիստական տնտեսավարման, էկոնոմիկայի կառավարման կատարելագործման, կուսակցական կազմակերպությունների բազմաբովանդակ կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի, կուսակցության կողմից առաջ քաշված կոմունիստական շինարարության մեծ խնդիրների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու նրանց գործունեության բարելավման հարցերը։

Մեր ամբողջ բազմաբովանդակ աշխատանքն այժմ նպատակամղված է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի չորրորդ և ավարտական տարվա պլանների կատարմանը։ Այսօր ակնհայտորեն պրակտիկ գործունեության առաջին պլան են մղվում կառավարչական և կազմակերպչական աշխատանքի համակողմանի բարելավման, ժողովրդական տնտեսության ղեկավարման հետագա կատարելագործման պրոբլեմները, որոնց լուծումը պայմանավորված է կուսակցական կազմակերպությունների բոլոր օղակների մարտունակության հետագա բարձրացմամբ, հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությամբ։

Կուսակցության պլանների կենսագործման պայքարում հսկայական նշանակություն ունի մասսայական-քաղաքական և գաղափարական աշխատանքը։ Ուստի և, ինչպես նշվեց ակտիվի ժողովում, անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել դրա արդյունավետության ու ներգործունության բարձրացմանը։ Այդ առումով անգնահատելի նշանակություն ունեն Լ. Ի. Բրեժնևի ստեղծագործությունները, որոնք բովանդակում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործի հետագա բարելավմանն ուղղված չափազանց արժեքավոր խորհուրդներ ու հանձնարարականներ։

Հանրապետության կուսակցական կազմակերպություններում այժմ ուսումնասիրում են Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները։ Անշուշտ, այսուհետ ևս գաղափարական ներգործման բոլոր միջոցները ակտիվորեն և արդյունավետ կերպով ի սպաս կդրվեն նրա ստեղծագործությունների, այդ թվում և «Խոպանի» պրոպագանդման և ուսումնասիրման նպատակին։

Լուրջ անելիքներ ունեն մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Լ. Ի. Բրեժնևի գրքերի քաղաքական նշանակությունը լայնորեն լուսաբանելու հետ մեկտեղ դրանք պարտավոր են ըստ ամենայնի ծավալել ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան և նոյեմբերյան պլենումներում Լ. Ի. Բրեժնևի ելույթների բովանդակած դրույթների ու հանձնարարականների պարզաբանման ու պրոպագանդման աշխատանքը, դրանցից բխող գործնական հետևությունները սերտորեն շաղկապել հանրապետության առջև դրված խնդիրների լուծման հետ։ Գաղափարական ճակատի աշխատողների վսեմ պարտքն է՝ բարձրացնել աշխատանքի որակն ու արդյունավետությունը, կատարելագործել նրա ձևերն ու մեթոդները, հասնել հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքների և ամբողջությամբ վերցրած՝ հնգամյա պլանի կատարման գաղափարական ապահովմանը։

ԱՅՍ ՏԱՐԻ ԼՐԱՆՈՒՄ է խոպանի յուրացման 25-ամյակը։ Քառորդ դար... Լավագույն տարիքը՝ առնականության ու հասունության։ Եվ ո՛չ միայն մարդու կյանքում։ Խոպանի համար ևս դրանք առնականացման տարիներ էին։ Ասենք, խոպան անունն այսօր այնքան էլ չի համապատասխանում ծաղկած տափաստանների էությանը։ Հիմա դրանք շեն ավաններ են ու ծփացող արտեր, ժամանակակից կոմունիկացիաներ են ու արդյունաբերական կենտրոններ։ Եվ, այնուամենայնիվ, այդ անունը թանկ է մեզ համար։ Դա խորհրդանշում է մեր



ժողովրդի սխրանքը, հացի համար մղված ամենահերոսական ճակատամարտի վեհությունը։

Եվ այսպես, խոպանը 25 տարեկան է։ Ժամանակահատված, որ լիովին բավարար է ընդհանրացումների համար։ Միանգամայն իրավացի է Լ. Ի. Բրեժնևը, երբ գրում է. «...պատմական իրադարձությունների, քաղաքական խոշոր վճիռների իսկական նշանակությունը ի հայտ է գալիս, որպես կանոն, բնավ ոչ միանգամից, իսկույն ևեթ, այլ միայն ավելի ուշ, երբ կարելի է մտադրությունները համադրել ստացված արդյունքների հետ, գնահատել այդ իրադարձությունների և վճիռների փաստական ազդեցությունը կյանքի այս կամ այն կողմի վրա։ Պատմական ժամանակահատվածը, նվազ նկատելի դարձնելով դետալները և մանրամասները, դրանով իսկ հնարավորություն է տալիս ավելի լավ, ավելի ցայտունորեն տեսնելու գլխավորը, հիմնականը»։

Խոպանի պատմությունը այս խորիմաստ մտքի լավագույն իլյուստրացիան է։ Տարիները, այո, նվազ նկատելի են դարձրել մանրունքները, և այժմ մենք խոպանը տեսնում ենք խոշոր, պատմական պլանով։ Անհնար է այսօր մտքով անգամ երկիրը պատկերացնել առանց խոպանի։ Քառորդ դար առաջ սկսված էպոպեայի գլխավոր արդյունքն այն է, որ երկրի արևելքում ստեղծվեց հացահատիկի արտադրության մի նոր վիթխարի բազա։ Կարճ ժամանակամիջոցում այստեղ յուրացվեց 42 միլիոն հեկտար հող, որից ավելի քան 25 միլիոնը՝ Ղազախստանում։

Այսօր մեր բարեկեցության աճը որոշակիորեն պայմանավորված է նրանով, թե ինչպես է «աշխատում» խոպանը։ Երախտագիտությամբ պետք է ասել, որ այն արդարացնում է ժողովրդի սպասելիքները։ Քսանչորս տարում, ներառյալ 1977 թվականը, միայն ղազախստանյան խոպանը արտադրել է 438,2 միլիոն տոննա հացահատիկ, որից 252,2 միլիոն տոննան վաճառվել է պետությանը։ Այդ նույն ժամանակաշրջանում հանրապետության ամբողջ գյուղատնտեսության վրա կատարված ծախսերը (ներառյալ և խոպանի յուրացումը) կազմել են 21,1 միլիարդ ռուբլի։ Մինչդեռ հացահատիկի վաճառքի շրջանառության հարկից ստացվել է 27,2 միլիարդ ռուբլի։ Այսինքն՝ զուտ շահույթը կազմել է 6,1 միլիարդ ռուբլի։ Խոպանի յուրացմամբ, այսպիսով, նկատելիորեն աճեց երկրի հզորությունը։

Մինչև 1954 թվականը Ղազախստանն ուներ ընդամենը 382 սովխոզ, որոնցում ընդգրկված էր 183 հազար բանվոր։ Այսօր հանրապետությունն ունի 2.008 սովխոզ, դրանցում աշխատում է 1.290 հազար մարդ։ Խոպանի յուրացումը վերափոխել է ղազախական գյուղը. էապես բարձրացել է գյուղական աշխատավորի կենսամակարդակը , փոխվել է նրա կացութաձևը։ Խոպանը դա նաև հարյուրավոր նոր արդյունաբերական ձեռնարկություններ է, երկաթուղային և ավտոմայրուղիներ, նրա յուրացումը նշանավորվեց սոցիալական առաջընթացի լուրջ տեղաշարժերով։

Հետզհետե զորեղանում է դյուցազնական տափաստանը։ 1978 թվականին ղազախստանյան խոպանը նորից աշխարհը զարմացրեց իր մեկ միլիարդ փթով։ Թվում է, թե այդ ցուցանիշը տափաստանի համար արդեն վարքագծի նորմա է դառնում։ Խոպանի մեծագույն ծառայությունն այն է, որ նա «կայունություն տվեց մեր ամբողջ գյուղատնտեսությանը, ապահովեց անհրաժեշտ չափերով հացահատիկի ստացման երաշխիքը» (Լ. Ի. Բրեժնև)։

Խոպանի յուրացումը իրենով նոր փուլ նշանավորեց կուսակցության ագրոտեխնիկական քաղաքականության իրականացման պատմության մեջ, դարձավ այն բանի հիանալի օրինակը, թե ինչպես պետք է կոմպլեքս ձևով լուծել հասունացած ժողովրդատնտեսական պրոբլեմը։ Իհարկե, իր մասշտաբներով վիթխարի այդ աշխատանքը չէր կարող լրիվ անսխալ լինել։ Լեոնիդ Իլյիչը շատ տեղին է վերհիշում Վ. Ի. Լենինի հետևյալ խորիմաստ միտքը. «Ռուս բանվոր դասակարգը ազատություն կնվաճի իր համար և Եվրոպայի առաջընթացի խթան կծառայի սխալներով լի իր հեղափոխական գործողություններով, և թող գռեհկամիտները պարծենան իրենց հեղափոխական անգործության անսխալականությամբ»։

Խոպանի էպոպեայի տարեգրության մեջ քիչ օրինակներ չկան այն մասին,



digitised by A.R.A.R.@

թե մեծ ձեռնարկումը իր անսովորությամբ ինչպես հանկարծակիի բերեց շատ-շատերին, այդ թվում և իրենց գործին նվիրված մարդկանց, բայց ուսանելին, անհամեմատ ավելի նշանակալին այստեղ ամեն ինչ գլխավոր ուղղությանը ենթարկելու, նկատված սխալներն ու ոչ ճիշտ տենդենցները ժամանակին հաղթահարելու, կուսակցության գիծը անշեղորեն կիրառելու հմտությունն է։

Խոպանում կուսակցության ողջ գործունեությունը իր էությամբ նորարարական էր և դրա մեջ բնորոշն ու կարևորը այն անգնահատելի փորձն է, որ ձեռք բերվեց աշխատավորական զանգվածների ուժերը մեծ խնդրի իրականացմանը նպատակամղելու, կազմակերպչական, քաղաքական ու գաղափարական աշխատանքի ողջ զինանոցը այդ նպատակին ծառայեցնելու ասպարեզում։

Մեր երկրում սոցիալիզմի շինարարությունը հարուստ է այնպիսի օրինակներով, երբ կուսակցությունը առկա նյութական ու աշխատանքային ռեսուրսները մոբիլիզացրել ու կենտրոնացրել է ժողովրդական տնտեսության հատկապես կարևորագույն օբյեկտներում։ Հիշենք Դնեպրոգէսը, Ամուրի Կոմսոմոլսկը, իրենց մասշտաբներով ոչ միանման տասնյակ ու հարյուրավոր այլ կառույցներ։ Խոպանը դրանց շարունակությունն է՝ միայն թե այլ պայմաններում, այլ մասշտաբներով։ Իր հերթին՝ խոպանը ևս այսօր շարունակվում է։ Հիշենք դարի կառույցը՝ ԲԱՄ-ը, Ռուսաստանի ոչ սևահողային գոտին, Սիբիրի ու Հեռավոր Արևելքի տասնյակ նորակառույցները... Հետևաբար, շարունակվում են և խոպանի դասերը։

Խոպանի յուրացման էպոպեան, ինչպես նշում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Դ. Ա. Կունաևը, «դարձավ ոչ միայն համաշխարհային հողագործության պատմության եզակի իրադարձություն, այլև սովետական ինտերնացիոնալիզմի իսկական դպրոց, երիտասարդության աշխատանքային կոփման դպրոց, արիության ու տոկունության, փութաջան տնտեսավարման դպրոց»։ Կուսակցության ու ժողովրդի այդ սխրանքը, որը սկզբունքային առաջընթաց նշանավորեց մեր ողջ երկրի գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում, խոր ու համակողմանի լուսաբանվել է Լ. Ի. Բրեժնևի «Խոպան» գրքում։ Այստեղ խտացված ձևով արտացոլվել է այն ամբողջ նորը, ինչ խոպանն իր հետ բերեց մեր էկոնոմիկային ու ժողովրդի հասարակական գիտակցությանը։

Մեր երկիրը քաղաքական ու աշխատանքային մեծ վերելքով է սկսել հնգամյակի նախավերջին՝ չորրորդ տարին։ 1979 թվականին, հավասարապես և գալիք տարիների կարևորագույն խնդիրը մնում է արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման համար մղվող պայքարի ուժեղացումը։ Այդ պայքարը, ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումի որոշման մեջ, պետք է մղել լայն ճակատով՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում և շինարարությունում, էկոնոմիկայի մյուս ճյուղերում, արտադրության ու կառավարման բոլոր օղակներում։ Պլենումը շեշտեց էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների հետզհետե աճող նշանակությունը, ջանքերը դրանց առավել լրիվ օգտագործման վրա կենտրոնացնելու անհրաժեշտությունը։ Այդ պահանջը հավասարապես վերաբերում է և գյուղատնտեսությանը, որտեղ գլխավոր խնդիրը հողագործության բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացումն է։

Ինքնին հասկանալի է, որ տնտեսական զարգացման ինտենսիվացումը, բարձր արդյունավետությունն ու աշխատանքի որակն ապահովելու առաջին պայմանը անտնտեսվարության, անպատասխանատվության դեմ պայքարի ուժեղացումն է, այն ամենի ռացիոնալ օգտագործումը, ինչ ունի մեր ժողովրդական տնտեսությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրեց՝ հաստատակամորեն կատարելագործել կազմակերպչական ու մասսայական քաղաքական աշխատանքը, բարձրացնել կուսակցության բոլոր օղակների մարտունակությունը, տնտեսական ու գաղափարադաստիարակչական խնդիրների լուծման գործում կոմունիստների ավանգարդային դերը, կադրերի ակտիվությունն ու հանձնարարված գործի նկատմամբ նրանց անձնական պատասխանատվությունը։



Առաջադրելով խնդիրները, կուսակցությունը ցույց է տալիս և այն միջոցները, որոնց կիրառմամբ դրանց լուծումը կարելի է իրագործել առավելագույն արդյունավետությամբ։ Մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում, մեզ համար հուսալի կողմնորոշիչներ են ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները, Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները։

Նորից ու նորից վերընթերցելով «Խոպանը», մեզնից յուրաքանչյուրը ներքին անկասելի մի պահանջ է զգում՝ հեղինակի բարձր չափանիշներով ստուգելու իր պրակտիկ գործունեությունը, համադրելու այդ չափանիշները սեփական աշխատանքի արդյունքների հետ, շտկելու վրիպումները, թերությունները, սխալները։ Գաղափարաքաղաքական ու բարոյադաստիարակչական իր համակող լիցքով այդ գիրքն ընթերցողին տոգորում է բարձր քաղաքացիությամբ, ժողովրդին ու երկրին առավելագույն արդյունավետությամբ ծառայելու պատրաստակամությամբ։

Դրանում է Լ. Ի. Բրեժնևի գրքի ուժը։

«Խոպանը» իր մտորումներով ու գաղափարներով ընթերցողին խորհելու առատ նյութ է տալիս՝ և՛ իմացական, և՛ գործնական առումով։ Այն կողմնորոշող մեծ պոտենցիալ է պարունակում իր մեջ։ Կուսակցական ու գաղափարական ճակատի աշխատողների խնդիրն է՝ գրքից արվող գործնական հետևությունները առավելագույն արդյունավետությամբ ի սպաս դնել մեր առջև ծառացած խնդիրների լուծմանը։

---





digitised by A.R.A.R.@

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՐԿՈՒ ՁԵՎԵՐԻ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Յ. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

ՍՄԿԿ ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ կոմպլեքսային ձևով է լուծում գյուղում կոմունիստական շինարարության տնտեսական և սոցիալ-քաղաքական պրոբլեմները, որն արտացոլում է գյուղատնտեսության բնագավառում կուսակցության վարած ստրատեգիայի ու տակտիկայի էությունն արդի պայմաններում:

Կուսակցության այդ ստրատեգիայի ու տակտիկայի ստեղծագործական մշակման գործում վիթխարի ավանդ ներդրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը: Սահմանելով կուսակցության ստրատեգիական խնդիրների էությունը գյուղատնտեսության մեջ, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում ասաց.

«Գյուղատնտեսության առջև մեր կողմից դրվող գլխավոր խնդիրն է՝ հասնել նրա բոլոր ճյուղերի բազմակողմանի, դինամիկ զարգացմանը, երկրի համար պարենամթերքի և գյուղատնտեսական հումքի հուսալի մատակարարմանը, այն հաշվով, որ դրանց արտադրության աճը ապահովի ժողովրդի կենսամակարդակի հետագա նշանակալի բարձրացում: Միաժամանակ մենք պետք է ջանքերը բազմապատկենք քաղաքի ու գյուղի նյութական ու կուլտուր-կենցաղային կենսապայմանների մերձեցման խնդիրների լուծման գործում»:

Այդ խնդիրների լուծման պրոցեսում առաջանում են նոր, ընդ որում սոցիալ-քաղաքական պրոբլեմներ, որոնք արտացոլում են հասուն սոցիալիզմի զարգացման և աստիճանաբար կոմունիզմին անցման արդի փուլը: Այդ պրոբլեմները բազմակողմանի են: Սույն հոդվածում լուսաբանվում են սոցիալ-քաղաքական այն պրոբլեմները, որոնք բխում են միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի զարգացման ներկայիս պրոցեսներից:

## I. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՐԿՈՒ ՁԵՎԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման ու մերձեցման նոր փուլը և դրանց հետ կապված սոցիալ-քաղաքական պրոբլեմները հաստատում և հարստացնում են մարքս-լենինյան հիմնարար դրույթը արտադրաուժերի և արտադրահարաբերությունների, էկոնոմիկայի և քաղաքականության, բազիսի ու վերնաշենքի միջև եղած դիալեկտիկական կապի մասին:

«Նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ, ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում ինդուստրիալ հիմքի վրա: Արտադրաուժերի մեջ կատարվող այս որակական տեղաշարժը իր հերթին պահանջում է արտադրահարաբերությունների կատարելագործում, հանրայնացման պրոցեսների ուժեղացում, աշխատանքի բաժանում... Արտադրության բազմաճյուղ



մասնատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգություն են մնացել անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերազինման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը: Ուստի արտադրության հետագա մասնագիտացումը և համակենտրոնացումը, միջտնտեսային կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական, արմատական հարցերն են դառնում» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 607):

Արտադրահարաբերությունների կատարելագործումը գյուղատնտեսության մեջ, ինչպես ցույց է տալիս Մոլդավիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղազախստանի և մյուս հանրապետությունների, ինչպես նաև երկրամասերի ու մարզերի, հատկապես Կրասնոդարի երկրամասի, Պենզայի, Վորոնեժի մարզերի օրինակը, բացահայտում է սոցիալիզմի զարգացման վիթխարի առավելությունները, անսպառ պոտենցիալը և հսկայական հնարավորությունները:

Տնտեսական հարաբերությունները սահմանում են սոցիալ-քաղաքական պրոբլեմները, իր հերթին, այդ պրոբլեմների ճիշտ լուծումը արագացնում է տնտեսական զարգացումը կոմունիզմի ճանապարհին: Այս միակ ճիշտ մեթոդոլոգիական հիմքի վրա էլ մշակվել են ՍՄԿԿ-ի բոլոր ծրագրային որոշումները ագրարային հարցի, այդ թվում և միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի զարգացման պրոբլեմների մասին: Առանձնահատուկ նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումի որոշումները, ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների նյութերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ծրագրային ելույթները:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում գյուղատնտեսության հետագա առաջընթացի մայրուղին ընդհանրացված ձևով նշված է «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման մեջ: Այդ որոշման կատարումը կապահովի կոմունիզմի կառուցման ո՛չ միայն տնտեսական, այլև կարևորագույն սոցիալական խնդիրների իրականացումը:

Կուսակցական բոլոր փաստաթղթերի միջով կարմիր թելի նման անցնում է այն գաղափարը, որ սոցիալ-քաղաքական շատ պրոբլեմների լուծման օբյեկտիվ հիմքը սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման ու մերձեցման դիալեկտիկան է:

Այդ դիալեկտիկան արտացոլում է հանրային սեփականության զարգացման ներքուստ անխզելիորեն կապված երկու տենդենցներ:

Առաջին տենդենցը ենթադրում է սոցիալիստական սեփականության երկու ձևերի, դրանց հետագա անշեղ զարգացման բոլոր պոտենցիալ հնարավորությունների բացահայտումը՝ պետական սեփականության առաջատար դերի պահպանման պայմաններում: Զարգացման այդ տենդենցի մասին անհրաժեշտ է խոսել, քանի որ սեփականության երկու ձևերի հարցի շուրջ տեղի ունեցող բանավեճում արտահայտվել են մի շարք սխալ կարծիքներ: Ոմանք գտնում են, որ պետական սեփականությունն արդեն բավականաչափ հասուն է, գրեթե կոմունիստական, և որ այդ սեփականության միասնական դառնալուն խանգարում է միայն կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը, որն անհրաժեշտ է արագ կրճատել՝ խմբային բնույթը վերացնելու և արագորեն հանրայնացնելու միջոցով: Նման հարցադրումը ժխտում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հետագա զարգացման անհրաժեշտությունը: Մինչդեռ, համաժողովրդական սեփականությունը միայն իր սոցիալական բնույթով և զարգացման հեռանկարներով է կոմունիստական, բայց իր զարգացման մակարդակով այն դեռ պետք է լրիվ չափով դառնա կոմունիստական, որին կարելի կլինի հասնել կոմունիստական արտադրաուժերի հասունացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման շնորհիվ միայն:

Գյուղատնտեսության մեջ պետական սեփականության օրինաչափ աճի մասին են վկայում հետևյալ տվյալները: 1959-ից մինչև 1976 թվականը սովխոզների քանակը երկրում 6,5 հազարից հասավ 19,6 հազարի, իսկ սովխոզների



digitised by A.R.A.R.@

գյուղատնտեսական հողատարածությունների տեսակարար կշիռը հանրային սեկտորում 34-ից՝ 65 տոկոսի։ Պետական սեփականության բաժնի աճման այդ ընդհանուր և առաջատար տենդենցը պահպանվելու է այսուհետ ևս՝ մինչև կոմունիզմի լրիվ կառուցումը։

Պետական սեփականության հետ սերտորեն կապակցված պետք է է՛լ ավելի զարգանա նաև կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը, առավելագույն չափով բացահայտելով իր վիթխարի հնարավորությունները։ Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հետագա զարգացման անհրաժեշտության մասին ասված է ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։ 12-րդ հոդվածում նշված է. «Պետությունն աջակցում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության զարգացմանը և նրա մերձեցմանը պետական սեփականության հետ»։

Մոլդավական ՍՍՀ-ում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով կոլտնտեսությունները սովխոզներից առաջ են անցել։ Նման փաստերը խոսում են այն մասին, որ անհրաժեշտ է այսուհետ ևս զարգացնել սեփականության երկու՝ ոչ միայն պետական, այլև կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերը։ Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն արագ վերացնելու ձգտումը ծնում է շատ սխալներ ու դժվարություններ։ Բավական է ասել, որ այդ ձգտման հետ է կապված եղել կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսության առնվազն թերագնահատումը։ Այդ հանգամանքը մեծ դժվարություններ ծնեց ո՛չ միայն գյուղատնտեսական մթերքների մատակարարման, այլև գյուղական երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործում։

Երկրորդ տենդենցը, արտացոլելով ներկայի ու ապագայի, սոցիալիստական կարգի տնտեսական հիմքերի խորքային պրոցեսները, արտահայտում է հանրային սեփականության երկու ձևերի անշեղ մերձեցման, աստիճանական միաձուլման անհրաժեշտությունը՝ միասնական կոմունիստական սեփականության մեջ նրանց լրիվ միաձուլման հեռանկարով։ Այդ տենդենցը օբյեկտիվ անհրաժեշտությամբ ծնեց միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումը, որն արտացոլում է ամբողջ հասարակության մասշտաբով արտադրության հանրայնացման ամենաբարձր մակարդակի հասնելու կարևորագույն պայմանը։

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման դիալեկտիկայում անհրաժեշտ է հաշվի առնել և առանձնացնել առաջատար տենդենցը, այսինքն՝ նրանց մերձեցումը կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը մինչև համաժողովրդական սեփականության մակարդակին հասցնելու հիման վրա, և դրա հետ սերտորեն կապված՝ կոլտնտեսային գյուղացիության անշեղ բարձրացումը մինչև բանվոր դասակարգի սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակը, ամբողջությամբ վերցրած՝ քաղաքի առաջատար դերի ապահովումը դեպի կոմունիզմ գյուղի առաջընթաց շարժման ընդհանուր պրոցեսում։

Այսպիսով, սոցիալիստական սեփականության երկու ձևերի դիալեկտիկան արտահայտում է նրանց անշեղ զարգացման և անկասելի մերձեցման անհրաժեշտությունը։ Երբ գրականության մեջ միանգամայն իրավացիորեն շեշտը դրվում է մերձեցման վրա, երբեք չի կարելի մոռանալ, որ դա անհնար է առանց նրանց օրինաչափ զարգացման, որն ապահովում է սեփականության երկու ձևերի բոլոր պոտենցիալ հնարավորությունների լրիվ բացահայտումը։ Այս օբյեկտիվ դիալեկտիկայի խոր իմացությունը շատ կարևոր է միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի զարգացման սոցիալ-քաղաքական պրոբլեմները ճիշտ հասկանալու համար։ Կարելի է ամենայն վստահությամբ ասել, որ միջտնտեսային ու ագրոարդյունաբերական կոոպերացման պայմաններում սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման դիալեկտիկայից տրամաբանորեն բխում են բանվոր դասակարգի հետագա զարգացման անհրաժեշտությունը, նրա առաջատար դերի ուժեղացումը, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության ստեղծագործական ակտիվության բարձրացումը, նրանց անխախտ դաշինքի ամրապնդման ու նրանց միջև եղած տարբերությունների աստիճանական վերացման օրինաչափությունը։



## II. ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՌԱՋԱՏԱՐ ԴԵՐԻ ԱՃԸ

Հանրահայտ ճշմարտություն է դարձել, որ բանվոր դասակարգի առաջատար դերի, աշխատավոր գյուղացիության հետ նրա դաշինքի շնորհիվ, լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում ձեռք է բերվել համաշխարհային-պատմական հաղթանակ՝ աշխարհում առաջին անգամ կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ և իրականացվում է անմիջական աստիճանական անցումը կոմունիզմին։ Ընդ որում, կարևոր է շեշտել, որ գրականության մեջ երբեմն մոռանում են, որ անցումը կոմունիզմին գյուղում և քաղաքում իրականացվում է ոչ թե տարբեր ժամանակ, այլ միաժամանակ։ Այդ նպատակով կուսակցությունը մշակում և իրականացնում է տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուր-լուսավորական այնպիսի միջոցառումներ, որոնք աստիճանաբար հաղթահարում են արդյունաբերության և գյուղատնտեսության, քաղաքի և գյուղի զարգացման անհամաչափության և ոչ հակամարտական հակասությունների որոշ ասպեկտները։ Այդ խնդիրներն իրականացնելու համար կուսակցությունն ապահովում է ազգային եկամտի այնպիսի բաշխումը, երբ ծանր արդյունաբերության առաջանցիկ զարգացումը պահպանելու պայմաններում միաժամանակ զգալիորեն բարձրանում են կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ։

Այս փաստը հաստատում է այն դրույթը, որ բանվոր դասակարգը, ամրապնդելով դաշինքը կոլտնտեսային գյուղացիության հետ, շարունակում է այսուհետ ևս խաղալ իր առաջատար դերը։

Բանվոր դասակարգը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի գլխավոր կերտողն է, կոմունիստական իդեալների հիմնական կրողը, և իր պատմական առաքելությունն իրականացնելու համար բոլոր մնացած սոցիալական խավերին ցույց է տալիս կազմակերպվածության, կարգապահության, ստեղծագործական գործունեության, մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ անսահման նվիրվածության օրինակ։

Այնուհետև, ՍՍՀՄ բանվոր դասակարգը ուղղակի ու անմիջականորեն ներկայացնում է մեր երկրում գերակշռող ու տիրապետող համաժողովրդական պետական սեփականությունը, որի զարգացումը որոշիչ ու վճռական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության աճի, հասարակության պրոգրեսի, միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի իրականացման համար։

Գյուղատնտեսության զարգացման այս նոր փուլը սկսվել է ամենից առաջ բանվոր դասակարգի առաջատար դերի շնորհիվ, որը ստեղծել է հզոր, բարձր զարգացած տեխնիկա և մեքենաների ժամանակակից սիստեմ։ Բանվոր դասակարգի առաջատար դերը պարզորոշ պատկերացնելու համար հարկավոր է հիշել, որ ՍՄԿԿ ագրարային քաղաքականության կենտրոնական օղակն է գյուղատնտեսության հետագա տեխնիկական հագեցումը, ավելի ճիշտ վերազինումը մեքենաների ժամանակակից բարձրորակ սիստեմով, որն ապահովում է գյուղատնտեսության շատ ճյուղերի կոմպլեքսային մեքենայացումը։

Այդ նպատակի համար տասներորդ հնգամյակում հատկացվում է 42 միլիարդ ռուբլի։ Իսկ ընդհանուր առմամբ վերջին տարիներին շեշտակիորեն աճել են այն կապիտալ ներդրումները, որոնք ուղղված են գյուղատնտեսության խոշոր վերելքին։ 1971-ից մինչև 1977 թվականը գյուղատնտեսության զարգացման համար (աշխատանքների ամբողջ կոմպլեքսի համար) հատկացված են մոտ երկու միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ, ավելի շատ, քան սովետական իշխանության բոլոր նախորդ տարիներին։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո ավելի քան 1,5 անգամ աճել է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Եթե 1961—1965 թվականներին գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին արտադրությունը կազմել էր 82,8 միլիարդ ռուբլի, ապա 1976—1977 թվականներին՝ 121,8 միլիարդ ռուբլի։

Տնտեսական խոր վերափոխումները օրինաչափորեն առաջ են բերում սոցիալական փոփոխություններ։ Արդի պայմաններում արտադրաուժերի և ար-



digitised by A.R.A.R.@

տադրահարաբերությունների զարգացման այդ դիալեկտիկայի կոնկրետ արտահայտությունն են միջտնտեսային միավորումների և ագրոարդյունաբերական կոմպլեքսների առաջացումն ու զարգացումը։ Դրանց մասսայական զարգացումը հասուն սոցիալիզմի էական հատկանիշներից է։ Դժբախտաբար, մեր որոշ սոցիոլոգներ մոռանում են այդ հատկանիշը, երբ գրում են զարգացած սոցիալիզմի մասին։

Գյուղատնտեսության զարգացման մայրուղու ամրապնդումն ու անշեղ զարգացումը մեծապես պայմանավորված է բանվոր դասակարգի արդյունաբերական ջոկատի ստեղծած մեքենաների ողջ կոմպլեքսի քանակի ու որակի հետագա աճով։ Բայց դա քիչ է։ Գյուղատնտեսական տեխնիկայի արտադրողականությունն ու արդյունավետությունը լրիվ պայմանավորված են դրա հմուտ և խելացի օգտագործմամբ։ Այստեղից էլ բանվոր դասակարգի անշեղորեն աճող գյուղական ջոկատի հսկայական նշանակությունը, որն արդեն 1977 թվականին իր շարքերում ուներ 20,4 միլիոն մարդ, կամ բանվորական ջոկատի 31 տոկոսը։ Բանվոր դասակարգի գյուղական ջոկատի կարևորագույն խնդիրն է խնայողաբար վերաբերվել տեխնիկային, ժամանակին նորոգել այն և օգտագործել առավելագույն արդյունավետությամբ։

Նկատի ունենալով երկրի բանվոր դասակարգի (և՛ արդյունաբերական, և՛ ագրարային) բոլոր ջոկատները, Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում ունեցած ելույթում նշեց. «Բանվորի աշխատանքից մեծապես կախված է հողագործի և անասնապահի աշխատանքի վերջնական արդյունքը»։ Դաշտի առատությունը պայմանավորված է ո՛չ միայն հողագործի, այլև մեքենաշինարարի աշխատանքով։ Որքան ավելի արտադրողական և հուսալի է կոմբայնը, այնքան ավելի ծանրակշիռ է հացահատիկի բերքը։ Փաստերն արտացոլում են գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի զարգացման, միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի պրոցեսների արագացման, ընդհանրապես սոցիալիստական հասարակության և, մասնավորապես, գյուղի սոցիալական կառուցվածքի հետագա փոփոխման գործում բանվոր դասակարգի առաջատար դերի աճման ռեալ տենդենցը։

## III. ՆՈՐ ՊՐՈՑԵՍՆԵՐ ԳՅՈՒՂԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Կուսակցության XXV համագումարը գիտնականներից պահանջեց ավելի խոր ուսումնասիրել այն հարցերը, որոնք վերաբերում են մեր հասարակության զարգացման տենդենցներին, սոցիալական կառուցվածքի փոփոխություններին։ Ուսումնասիրելով սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի տենդենցները, մենք պետք է առաջին հերթին տեսնենք նորը բանվոր դասակարգի զարգացման գործում։ Բանվոր դասակարգի բոլոր ջոկատների, ամենից առաջ արդյունաբերական և ագրարային ջոկատների նոր ընդհանուր գիծը նրանց կուլտուր-տեխնիկական արագ աճն է, միջնակարգ և միջնակարգ-տեխնիկական կրթություն ունեցող մարդկանց թվի աստիճանական ու անշեղ աճը, որոնք սկսում են ներդաշնակորեն զուգակցել ֆիզիկական և մտավոր աշխատանքը։

Հարց է ծագում, թե սոցիալ-քաղաքական պլանով ինչպե՞ս ճիշտ գնահատենք այդ մարդկանց, որոշենք նրանց տեղը հասուն սոցիալիզմի հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքում։

Մեր սոցիոլոգիական գրականության մեջ տեղի է ունենում ընդհանրապես հասուն սոցիալիզմի զարգացման և մասնավորապես սոցիալ-դասակարգային կառուցվածքի ոլորտի նոր երևույթների գնահատումների որոնման բարեբեր պրոցես։ Սակայն երևան են եկել կեղծ պնդումներ այն մասին, թե իբր սովետական հասարակության մեջ առաջացել են նոր սահմանային սոցիալական խավեր՝ «բանվոր-կոլտնտեսականներ», «բանվոր-մտավորականներ», «կոլտնտեսական-մտավորականներ»։ Նույնիսկ երևան է եկել մի ձևակերպում «բանվոր-կոլտնտեսական-մտավորականներ» սոցիալական նոր խավի մասին։ Այս տեսակետը սկսել է տարածվել մոտավորապես վերջին տասը տարում։ Այստեղ որոշակիորեն շփոթում են բանվոր դասակարգը մտավորականության հետ։ Այս



տեսակետի սխալականությունն ակնհայտ է։ Կուսակցական և ոչ մի փաստաթղթում այն հաստատում չի ստացել։ Ձեռ ավելին, այդ տեսակետը անհամատեղելի է կուսակցության XXIV և XXV համագումարների որոշումների ոգու հետ, որոնցում տրված է հասուն սոցիալիզմի զարգացման և աստիճանաբար կոմունիզմին անցման արմատական պրոբլեմների ստեղծագործական մշակումը։ Այդ որոշումներում կարմիր թելի նման անցնում է այն գաղափարը, որ սովետական հասարակությունը արդեն ձեռք բերված սոցիալիստական սոցիալական միատարրությունից շարժվում է դեպի լիակատար կոմունիստական սոցիալական միատարրություն։ Հասուն սոցիալիզմի զարգացման այդ կարևորագույն օրինաչափությունն իրականացվում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության միջև եղած տարբերությունները աստիճանաբար վերացնելու միջոցով։

Որո՞նք են այն պատճառները, որոնց հետևանքով ծնունդ է առել այն տեսակետը, թե Սովետական Միությունում, զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ ձեռք է բերվել սոցիալիստական սոցիալական միատարրություն, երևան են եկել սոցիալական նոր խավեր։ Որոշ սոցիոլոգներ գտնում են, որ սոցիալիզմի պայմաններում, երբ արդեն գոյություն ունի բոլոր դասակարգերի և խավերի միատեսակ վերաբերմունք հանրային սեփականության նկատմամբ, սոցիալական կազմի գլխավոր չափանիշը կրթական մակարդակն է։ Եվ քանի որ շատ բանվորներ ու գյուղացիներ ունեն կրթական բարձր մակարդակ, այստեղից արվում է հասարակ հետևություն, որ նրանք կազմում են նոր խավեր՝ «բանվոր-մտավորականներ», «կոլտնտեսական-մտավորականներ»։

Իրականում սոցիալիզմի ժամանակ ևս դասակարգերի և խավերի բնորոշման գլխավոր ելակետային չափանիշը, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, նրանց տեղն է հանրային արտադրության պատմականորեն որոշակի սիստեմում։ Զարգացնելով այդ միտքը, Լենինը գրում էր. «Դասակարգերի միջև տարբերության հիմնական հատկանիշը նրանց տեղն է հանրային արտադրության մեջ, հետևաբար, նրանց հարաբերությունը դեպի արտադրության միջոցները» (ԵԼԺ, հ. 7, էջ 56)։ Այս և ուրիշ չափանիշներով զարգացած սոցիալիզմի պայմաններում դեռ կան բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը։

Բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը, նրանց իրավական ստատուսների մերձեցումը աշխատության մեջ (Կիև, 1976) նշվում է, որ կոլտնտեսական մեխանիզատորները պատկանում են «բանվոր-գյուղացիներ» միջակա սոցիալական կատեգորիային։ Քանի որ առաջացել է սեփականության միջակա, կամ նոր, ձև, նշանակում է, առաջացել են նաև նոր, կամ միջակա, սոցիալական խավեր— այս է սուբյեկտիվիստական տրամաբանությունը։ Նման տրամաբանությունից բխում է սեփականության երկու ձևերի տարբերություններն արագ վերացնելու և դրանով իսկ սոցիալ-դասակարգային տարբերության վերացումը արագացնելու ձգտումը։

Հապճեպության օրինակ են որոշ տնտեսագետների ու սոցիոլոգների այն պնդումները, թե մոտավորապես 90-ական թվականների սահմանագծում տեղի կունենա սեփականության երկու ձևերի լիակատար միաձուլում, կհաղթահարվեն քաղաքի և գյուղի էական տարբերությունները, բանվորների և կոլտնտեսականների դասակարգային տարբերությունները և կկազմավորվի անդասակարգ հասարակություն։ Այսպես, օրինակ, Վ. Ի. Ստարովերովը շեշտում է, որ «Քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների լիակատար հաղթահարումը զարգացած սոցիալիզմի կատարելագործման փուլի յուրահատուկ խնդիրն է» (տե՛ս Усиление социальной однородности советского общества. М., 1977, стр. 29)։

Ինչպես հայտնի է, կուսակցությունը հաղթահարել է գյուղի՝ կոմունիզմի հունով զարգացման ժամանակից շուտ ընթանալու զանազան տարբերակները՝ արագացած և ուղղակի անցումը կոմունային, ապրանքային շրջանառությունն անմիջական մթերափոխանակությամբ փոխարինելու անժամանակությունը և այլն։



digitised by A.R.A.R.@

Այս կանխատեսումները չեն համապատասխանում կուսակցության որոշումների ռեալիստական զգաստամիտ ոգուն։ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Մենք ռեալիստներ ենք։ Մենք քաջ գիտենք, որ գյուղատնտեսական արտադրության որակական վերափոխումը պահանջում է ժամանակ, աշխատանք, հսկայական ներդրումներ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 73)։ Գյուղատնտեսական արտադրության որակական վերափոխումը հնարավոր է սեփականության երկու ձևերի զարգացման հիման վրա։ Հետևաբար, սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման դիալեկտիկան սխալ ըմբռնելու հետևանքով, դրանց տարբերությունները արագ վերացնելու միտումով են բացատրվում նոր սահմանային սոցիալական խավեր հորինելու, ժամանակից շուտ բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության առանձին ջոկատները միաձուլելու և տեղաշարժելու փորձերը։

Իրականում միջտնտեսային և ագրոարդյունաբերական կոոպերացման շնորհիվ ձեռք է բերվում գյուղի սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացման ավելի բարձր աստիճան։

Երրորդ, ավելի էական պատճառը, որը ծնել է սովետական հասարակության մեջ սոցիալական նոր խավերի երևան գալու մասին տեսակետը, երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի սոցիալական զարգացման օրենքների նույնացումն է։ Այդ դիրքորոշումը պաշտպանում են մեր այն սոցիոլոգները, որոնք սոցիոլոգիան հասկանում են որպես գիտություն հասարակության մասին ընդհանրապես, անկախ դասակարգերից, հասարակական-քաղաքական կյանքից, որպես մի գիտություն, որը իբր անկախ է մարքսիզմ-լենինիզմից և դասվում է նրանից վեր։

Անշուշտ, ոչ մի մարքսիստ չպետք է մոռանա, որ կապիտալիզմը վերարտադրում է հակամարտական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը, որն իր բնույթով ընդունակ չէ հաղթահարելու դասակարգերի և դասակարգային պայքարի անհաշտելիությունը։ Իսկ հակամարտական դասակարգերից և դասակարգային պայքարից զերծ սոցիալիզմը, ընդհակառակը, հետևողականորեն ընթանում է հասարակության՝ իրենց էությամբ ոչ հակամարտական բոլոր ու ամեն տեսակ սոցիալ-դասակարգային տարբերությունները լրիվ հաղթահարելու ուղիով։ Այդպիսի պայմաններում խոսել և գրել սոցիալական նոր խավերի, այդ թվում և «սահմանային խավերի» (տերմինն ակնհայտորեն սոցիոլոգիական չէ, այլ տեխնիկաաշխարհագրական, որն առնված է ոչ հասարակական գիտությունների ոլորտից), նշանակում է չտեսնել սկզբունքային և արմատական տարբերությունները սոցիալիզմի և կապիտալիզմի սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման օրենքների միջև։ Այս հիմնազուրկ տեսակետի կողմնակիցներն ավելի հեռու են գնում։ Նրանք խոսում և գրում են զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալական շերտավորման զարգացման մասին։ Տվյալ ըմբռնումը ստրատիֆիկացիայի բուրժուական տեսությունը մեխանիկորեն տարածում է նաև սոցիալիստական հասարակության վրա, որն օբյեկտիվորեն ջուր է լցնում հակակոմունիզմի գաղափարախոսների ջրաղացին։

Հետևաբար, նշված սխալ կոնցեպցիան առնվազն հաշվի չի առնում ժամանակակից գաղափարական պայքարի ամբողջ մթնոլորտը, երբ «սովետագետներն» իրենց հերյուրանքներում շեշտը դնում են սովետական հասարակության մեջ ամեն տեսակ մտացածին նոր սոցիալական խավերի ու դասակարգերի երևան գալու, սովետական կարգի «էլիտար» բնույթի վրա։

Գաղափարական պայքարում մեր հակառակորդները ձգտում են օգտագործել սովետական առանձին հեղինակների նվազագույն շեղումները մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային դիրքերից։ Առանձնապես դա վերաբերում է սոցիոլոգների այն մի քանի աշխատություններին, որոնք կուրորեն ընդօրինակում են ամերիկյան էմպիրիկ սոցիոլոգիայի մեթոդներն ու եղանակները, հեռանում պատմական մատերիալիզմի և գիտական կոմունիզմի հիմնարար դրույթներից։ Մեր գաղափարական հակառակորդներն անմիջապես կառչում են նվազագույն տատանումից և այն օգտագործում մեր դեմ։

Սովետական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի գնա-



հատման հարցում «սովետագետների» հիմնական գաղափարն արտահայտել է մոլի հակակոմունիստ Ռ. Արոնը։ Իր Հասարակական զարգացման դիալեկտիկան գրքում նա գրում է, թե «այսպես կոչված սոցիալիստական հասարակությունը շերտավորված ու ստրատիֆիկացված է ոչ պակաս, քան կապիտալիստականը»։

Բնականաբար, հարց է ծագում. ինչպե՞ս կարելի է զանազանել բանվոր դասակարգի և գյուղացիության աճող զանգվածը, որոնք իրենց կուլտուր-տեխնիկական և հանրակրթական մակարդակով ավելի ու ավելի են բարձրանում և մոտենում մտավորականության մակարդակին ընդհանրապես, և արտադրատեխնիկական մտավորականության մակարդակին՝ մասնավորապես։

Այդ հարցի սպառիչ պատասխանը տվել է Լ. Ի. Բրեժնևն իր Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին հոդվածում։ Բացահայտելով զարգացած սովետական հասարակության սոցիալական կառուցվածքում կատարված խոր տեղաշարժերը, նա գրում է. «Զարգացած սոցիալիզմի պայմաններում և գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության ներքո աճում է **արտադրության նոր տիպի աշխատող, որի գործունեության մեջ ավելի ու ավելի ներդաշնակորեն է զուգակցվում ֆիզիկական և մտավոր աշխատանքը**» (ընդգծումը իմն է։— Յ. Ս.)։ Արտադրության այդ նոր տիպի աշխատողներն իրենց սոցիալական դրությամբ պատկանում են բանվոր դասակարգին և կոլտնտեսային գյուղացիությանը, այլ ոչ թե մտավորականությանը։ Այդ բանը կարևոր է շեշտել այն պատճառով, որ հասուն սոցիալիզմի սոցիալ-դասակարգային կառուցվածքի զարգացման դիալեկտիկան նրանց աստիճանական մերձեցումն ու նրանց միջև եղած տարբերությունների վերացումն է, այլ ոչ թե սոցիալական նոր խավերի առաջացումն ու նրանց փոխադարձ փոխակերպումը՝ մտավորականությունը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության հետ միաձուլելու միջոցով կամ հակառակը։

Կուսակցությունը և նրա տեսական կադրերը ստիպված էին բացատրական մեծ աշխատանք կատարել նման սխալ դատողությունները հաղթահարելու համար։ Այսպես, օրինակ, այդ առթիվ միանգամայն արդարացիորեն գրում է Պ. Ն. Ֆեդոսեևը. «Պրակտիկայում չհաստատվեցին և տեսության մեջ ճանաչում չգտան ենթադրությունները մտավորականությունը բանվոր դասակարգի մեջ լուծվելու և բանվոր դասակարգը մտավորության վերածվելու մասին։ Պատմական փորձը հաստատում է մարքս-լենինյան դրույթն այն մասին, որ սոցիալիստական դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցման միջոցով աստիճանաբար հաստատվում է հասարակության լիակատար սոցիալական միատարրությունը» (П. Н. Федосеев. Марксизм в XX веке. Изд. второе, М., «Мысль», 1977, стр. 605)։

Իհարկե, իրական կյանքում տեղի է ունենում բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության առանձին ներկայացուցիչների կամ նույնիսկ ամբողջ խմբերի անցում մտավորականության շարքերը և հակառակը։ Բայց չի կարելի ընդհանուր օրինաչափություններին ենթակա այդ մասնակի պրոցեսը դարձնել ինքնաբավ և, մոռանալով դասակարգեր կազմող հիմնական հատկանիշները, շփոթել ամբողջ դասակարգեր ու խավեր, ձգտել մեխանիկորեն միաձուլել նրանց։ Դա հասուն սոցիալիզմի և կոմունիզմին անցնելու պայմաններում կհանգեցներ խառնաշփոթության՝ սոցիալ-քաղաքական կառավարման բարդ հարցերում և մեխանիզմներում։ Չի կարելի շփոթել և նույնացնել երկու միանգամայն տարբեր հասկացություններ՝ «մտավորական բանվորին» և «բանվոր մտավորականին»։ Առաջինը ցույց է տալիս բանվորի կուլտուր-տեխնիկական, ընդհանուր մտավոր, հոգևոր աճը, երկրորդը՝ նրա սոցիալ-դասակարգային պատկանելությունը։ Այդ մասին պարզորոշ խոսվում է Լենինի աշխատություններում և կուսակցական փաստաթղթերում։

1973 թվականին Ուկրաինայի աշխատավորների առջև ունեցած իր ելույթում Լ. Ի. Բրեժնևը հիշեցրեց, որ դեռ մեր կուսակցության ծագման արշալույսին Վ. Ի. Լենինը հարգանքով էր խոսում «ինտելիգենտ բանվորների» մասին, որոնք կազմում են իրենց դասակարգի ավանգարդը։ Այնուհետև Լ. Ի. Բրեժնևը



digitised by A.R.A.R.@

շեշտեց. «Այն ժամանակ նրանք դեռ բոլորովին քիչ էին։ Իսկ հիմա այդպիսի բանվորներն արդեն միլիոններ են, և դա միանգամայն օրինաչափ է՝ դա մեր կուսակցության մեծ նվաճումն է, սոցիալիզմի նվաճումը։ Որքան մենք մոտենանք կոմունիզմին, այնքան ավելի օրգանական կլինի ֆիզիկական և մտավոր աշխատանքի կապը։ Արդեն այժմ բանվորը հաճախ կառավարում է սարքավորումների այնպիսի մեծ ու բարդ կոմպլեքսներ, որոնցից առաջ ոչ ամեն ինժեներ կարող էր գլուխ հանել» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 295)։ Զարգացնելով այդ միտքը, Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ կուսակցությունը ձգտում է հասնել այն բանին, որ բոլոր բանվորները, բոլոր գյուղացիները դառնան ինտելիգենտներ՝ բառիս ամենալայն իմաստով, լրիվ չափով կիրառեն իրենց ստեղծագործական ունակությունները, ակտիվորեն մասնակցեն մեր ողջ հասարակության հոգևոր կյանքին։

Երբեք չպետք է մոռանալ, որ մարքս-լենինյան գիտությունը, ինչպես և ամեն մի այլ իսկական գիտություն, պահանջում է ճիշտ հասկացություններ և տերմիններ, որոնք ճիշտ են արտացոլում բազմակողմանի, հակասականորեն զարգացող իրականությունը։ Բոլոր աշխատավորների՝ բանվորների, կոլտնտեսականների և մտավորականների կուլտուր-տեխնիկական, մտավոր մակարդակի ըստ ամենայնի զարգացման միջոցով մենք կհասնենք նրանց միջև եղած սոցիալ-դասակարգային տարբերությունների լրիվ վերացման։ Այս է սոցիալիզմի ժամանակ դեռևս գոյություն ունեցող սոցիալ-դասակարգային շերտավորումից կոմունիստական հասարակության լրիվ միատարրությանն անցնելու կենդանի դիալեկտիկան։ Միջտնտեսային և ագրոարդյունաբերական կոոպերացիան, կոմունիզմի կառուցման հիմնական տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական խնդիրների լուծման հետ սերտ կապակցված, արագացնում է այդ պրոցեսը։

Միջդասակարգային և ներդասակարգային տարբերությունների աստիճանական վերացման և մերձեցման պրոցեսի հետ սերտ կապակցված աստիճանաբար լուծվում է մյուս կարևորագույն սոցիալական խնդիրը՝ քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանների, նյութական և կուլտուրական բարեկեցության հավասարեցումը։

Կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ ասված էր, որ անհրաժեշտ է «ավելի ու ավելի առաջ գնալ քաղաքի ու գյուղի կյանքի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման ուղիով, որը մեր ծրագրային պահանջն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 73)։ Ընդսմին խոսքը ոչ թե մանրբուրժուական հավասարեցման բազայի վրա կատարվող հավասարարման մասին է, այլ նյութական և հոգևոր արտադրության հուժկու վերելքի հիման վրա, որն ապահովում է մարդկանց աճող պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։ Այս խնդիրը ուղղակի ու անմիջականորեն բխում է ՍՄԿԿ ընդհանուր սոցիալական քաղաքականությունից, որի գլխավոր նպատակն է՝ բարձրացնել ամբողջ սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցությունը։ Այդ խնդրի կատարման հնարավորությունները մեծապես աճում են միջտնտեսային և ագրոարդյունաբերական կոոպերացիայի զարգացման պայմաններում։

Առանձնապես կցանկանայինք զատել հետևյալ կոնկրետ խնդիրները, որոնք սոցիալական մեծ նշանակություն ունեն։ Դրանք են նյութատեխնիկական բազայի զարգացման մակարդակի հավասարեցումը, ֆոնդազինվածության ու էներգազինվածության և աշխատանքի արտադրողականության մերձեցումը կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Այդ նպատակով նախատեսվում է տասնմեկերորդ և տասներկուերորդ հնգամյակներում ընդլայնել աշխատատար գյուղատնտեսական ճյուղերի տեխնիկական վերազինումը գլխավորապես կոլտնտեսություններում։

Քաղաքի և գյուղի աշխատավորների աշխատանքի, կյանքի ու կենցաղի պայմանների հավասարեցումը տեղի է ունենում անշեղորեն, ամենից առաջ կոլտնտեսականների ռեալ եկամուտների աճման ավելի արագ տեմպերի իրականացման միջոցով։ Այսպես, եթե բանվորների եկամուտները մեկ աշխատողի



հաշվով 1976 թվականին 1940 թվականի համեմատությամբ ավելացել էին 3,6 անգամ, ապա այդ նույն ժամանակամիջոցում կոլտնտեսականների ռեալ եկամուտներն ավելացել էին 6 անգամ (տե՛ս Народное хозяйство 60 лет, М., 1977, стр. 487)։ Սակայն այդ նույն ժամանակամիջոցում սպառման հանրային ֆոնդերի բաժինը 14,5 տոկոսից աճել է մինչև 23, իսկ կոլտնտեսականի ընտանիքինը՝ 4,9-ից մինչև 20,7 տոկոս։

Իրոք գոյություն ունեցող այդ տարբերությունից բխում է քաղաքային և գյուղական բնակչության միջև (ներառյալ և կոլտնտեսականներին) սպառման հանրային ֆոնդերի բաշխման անհամամասնությունները գյուղի սպառման ֆոնդերի բաժինը մեծացնելու հաշվին հաղթահարելու անհրաժեշտությունը։ Սովետական պետության սոցիալական քաղաքականության այս հարցի լուծման համար որոշակի դեր պետք է խաղա միջտնտեսային և ագրոարդյունաբերական կոոպերացիայի հետագա զարգացումը։

Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման
զարգացման պրոցեսում տեղի է ունենում ո՛չ միայն հողագործական աշխա-
տանքը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակության վերածվելու, այլև ամ-
բողջ գյուղատնտեսական արտադրությունն արդյունաբերական արտադրության
տարատեսակության փոխարկվելու արագացած պրոցես, իհարկե, պահպանելով
դրանց անխուսափելի բնական առանձնահատկությունները։ Այդ պրոցեսում ա-
ճում է կոլտնտեսային գյուղացիության սոցիալ-քաղաքական ակտիվությունն
առանձին կոլտնտեսությունների շրջանակներից դուրս եկող համապետական
խնդիրների լուծման գործում։ Ուղղակի ու անմիջական կապ կա մի կողմից
գյուղատնտեսական արտադրության կոոպերացման ու մասնագիտացման,
մյուս կողմից՝ բնակավայրերի ամրապնդման միջև։ Տնտեսական և սոցիալա-
կան քաղաքականության միջև եղած այդ կապը հատկապես երևում է ՌՍՖՍՀ
ոչ սևահողային գոտու օրինակից, որտեղ լայն մասշտաբներով նախատեսվում է
գյուղական բնակավայրերի խոշորացում։

Գյուղական վայրերում քաղաքային տիպի փորձնական-ցուցադրական ավանների ստեղծման ասպարեզում կուտակված փորձը թելադրում է խորհել, որ ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության այդ կարևորագույն խնդիրը հաջողությամբ կլուծվի։ Փորձնական-ցուցադրական բանավանները գյուղում արմատավորում են ընդհանուր քաղաքային կոմունալ հարմարություններ՝ կենտրոնական ջեռուցում, ջրմուղ, կոյուղի, խելացի հարմարավետության զանազան տարբեր։ Նոր կառույցներում միաժամանակ հաշվի են առնվում գյուղական կյանքի առանձնահատկությունները, դրա մոտիկությունը բնությանը, բնական միջավայրին։ Այստեղից էլ միհարկանի տների գերակշռությունը, որոնք ունեն օժանդակ շենքեր անձնական տնամերձ տնտեսություն վարելու համար։

Միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի ստեղծման ու զարգացման փորձը հնարավորություն է ընձեռում կոնկրետացնելու մեր պատկերացումները նոր մարդու ձևավորման դիալեկտիկայի մասին, հաղթահարել միակողմանի դատողություններն այդ հարցի շուրջ։ Մասնավորապես, սոցիոլոգիական գրականության մեջ տարածվել են նոր մարդու ձևավորման պրոցեսի երկու միակողմանի կոնցեպցիաներ։ Ոմանք գտնում են, որ նոր մարդը ձևավորվում է միայն բանվոր դասակարգի լավագույն հատկանիշներն ընկալելով։ Մինչ ուրիշները կարծում են, որ նոր մարդը սինթեզում է սոցիալիստական հասարակության հավասարապես բոլոր դասակարգերի և սոցիալական խավերի բնորոշ գծերը։

Ագրոարդյունաբերական կոլեկտիվների փորձը հաստատում և հարստացնում է մեր պատկերացումներն այն մասին, որ նոր մարդու ձևավորումը կատարվում է բոլոր սոցիալիստական դասակարգերի և ժողովրդական մտավորականության լավագույն հատկանիշների սինթեզով՝ բանվոր դասակարգի՝ որպես կոմունիզմի կառուցման առաջատար ու գլխավոր ուժի դրական հատկանիշների գերակշռության պայմաններում։

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը սերտ ու անխզելի դաշինք կազմած կոմունիստական հասարակարգ են կառուցում։

---

digitised by A.R.A.R.@

ու կրթաթոշակների բարձրացման շնորհիվ աճեցին մոտ 40 միլիոն մարդու եկամուտները։ Ընթացիկ հնգամյակում սկսվել է բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձի, ինչպես նաև դրույքների ու ռոճիկների բարձրացման նոր փուլ։ Արդեն իրականացվում է ոչ-արտադրական ճյուղերի 31 միլիոն աշխատողների դրույքների ու ռոճիկների բարձրացումը, որը տարեկան պահանջում է 7 մլրդ ռուբլու միջոցներ։

Ամբողջությամբ վերցրած՝ բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը կավելանա 16—18 տոկոսով և հնգամյակի վերջին կհասնի ամսական ռուբլու 170, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ մինչև 116 ռուբլու։ Նշենք նաև, որ հնգամյակում 100 մլրդ ռուբլի կհատկացվի բնակարանային ու կոմունալ շինարարությանը, 20 մլրդ՝ առողջապահության, լուսավորության և կուլտուրայի նյութական բազայի ամրապնդմանը։

Այսպիսով, լայն պլանով ու հետևողականորեն իրականացվում է արդի փուլում կուսակցության սոցիալական քաղաքականության գլխավոր խնդիրը՝ ժողովրդի բարեկեցության արագ աճի ապահովումը։ Սակայն միայն դրանով չի սահմանափակվում սովետական հասարակության սոցիալական զարգացման ծրագիրը, որն առաջադրվել է կուսակցության վերջին համագումարների կողմից։ Ավելին, բարեկեցության բարձրացումը դիտվում է որպես էական պայման սոցիալական այնպիսի կարևոր պրոբլեմների լուծման համար, ինչպիսիք են՝ սոցիալիստական ապրելակերպի զարգացումը և սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի հետագա կատարելագործումը։

Սպառողական հասարակությունը սոցիալիզմի հակոտնյան է։ Հետևապես. աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացումը ինքնանպատակ չէ, այլ նրանց համակողմանի զարգացման, հոգևոր աշխարհի հարստացման, հասարակական-քաղաքական ակտիվության աճի, ստեղծագործական ուժերի ծավալման, նրանց մոտ սոցիալիստական-կոմունիստական գծերի արմատավորման վճռական պայմանն է։

Սոցիալիստական ապրելակերպի զարգացումը կուսակցության սոցիալական քաղաքականության երկրորդ գլխավոր խնդիրն է, որի անտեսման կամ ոչ ճիշտ լուծման դեպքում նյութական բարեկեցության բարձրացումը կարող է հանգեցնել քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվների աշխուժացման, սպառողական հոգեբանության ու տրամադրությունների զարգացման։

ՍՄԿԿ XXV համագումարը հանգեց այն եզրակացության, որ անհրաժեշտ է կուսակցության սոցիալական քաղաքականության այդ երկու գլխավոր խնդիրների լուծումը՝ ժողովրդի բարեկեցության աճը և սոցիալիստական ապրելակերպի զարգացումը դիտել մի միասնության, փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ։

***

Զարգացած սոցիալիզմի փուլում սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի զարգացման բովանդակությունն ու գլխավոր ուղին աշխատավորների հասարակական խմբերի մերձեցումն է, նրանց միջև եղած էական տարբերությունների հաղթահարումը, որը միտում է դասակարգերի լիակատար ոչնչացում և սոցիալական միասեռության հաստատում։ Կոմունիստական կուսակցությունը կոչված է կարգավորելու, պլանավորելու ու ղեկավարելու այդ վիթխարի ու բարդ սոցիալական պրոցեսները, իր գործնական քաղաքականությամբ արագացնելու դրանց ընթացքը։ Այսինքն՝ արդի փուլում ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության գլխավոր խնդիրներից է սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի կատարելագործումը։ Հստակ ձևակերպելով այդ խնդիրը, ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց. «Կուսակցության քաղաքականության նպատակն է՝ նպաստել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության մերձեցմանը, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը։ Դա անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գլխավոր տեղամասերից մեկն է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 95—96)։ Իր այդ գլխավոր նպատակին կուսակցությունը հասնում է գիտականորեն մշակված սոցիալական քաղաքականության և դրանից բխող տեխնիկատնտեսական, կազմակերպական-քաղաքական և դաստիարակչական բնույթի միջոցառումների իրականացման ճանապարհով։



Ամենից առաջ կուսակցությունն իր տնտեսական քաղաքականությամբ ապահովում է աշխատավորների հասարակական խմբերի մերձեցման օբյեկտիվ հիմքերի ստեղծումն ու դրանց հետագա զարգացումը։ Այդ գիծը որոշակի դրսևորվում է տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում։ Այսպես, քաղաքի և գյուղի մերձեցման օբյեկտիվ հիմքը արտադրաուժերի զարգացման և կուլտուրկենցաղային պայմանների տեսակետից նրանց միջև եղած էական տարբերությունների հաղթահարումն է, որը ՍՄԿԿ XXV համագումարը համարեց գյուղատնտեսության ինդուստրացման և նրա շեշտակի վերելքի կազմակերպման գլխավոր նպատակներից մեկը։ Ինչպես հայտնի է, մի շարք, հիմնականում օբյեկտիվ պատմական բնույթի պատճառներով միայն վերջին ժամանակներս են մեծ միջոցներ հատկացվում գյուղատնտեսության զարգացմանը։ Բավական է նշել, որ սովետական իշխանության բոլոր տարիներին գյուղատնտեսության ստացած 320 մլրդ ռուբլու կապիտալ ներդրումներից 213-ը ընկնում են վերջին երկու հնգամյակին։ Իսկ ընթացիկ՝ տասներորդ հնգամյակում նախատեսվում է գյուղատնտեսության զարգացման համար ծախսել 172 մլրդ ռուբլի, այսինքն՝ 41 մլրդ-ով ավելի, քան անցյալ հնգամյակում։ Այդ վիթխարի միջոցների ներդրմամբ մեծ չափով առաջ կմղվեն գյուղատնտեսության ինդուստրացումը, գյուղում արտադրաուժերի զարգացումը։ Դեռևս պահպանվող դասակարգային տարբերությունների վերացման պատմական պրոցեսի հիմքում ընկած է սոցիալիստական սեփականության երկու ձևերի՝ համաժողովրդական-պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության մերձեցումն ու հետագա միաձուլումը։ Դրան մեծապես նպաստում է կուսակցության քաղաքականությունը, որի նպատակն է միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսների ստեղծումը։

Ինչպես իր որոշման մեջ նշեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումը, գյուղատնտեսական արտադրության զարգացման խնդիրները զուգակցվում են գյուղի սոցիալական պրոբլեմների լուծման հետ։ Վերջին տասնամյակում կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների աշխատանքի վարձատրությունը մեծացել է երկու անգամ։ Մեծ աշխատանք է տարվում կոլտնտեսականների կենսաթոշակի ապահովման և սոցիալական ապահովագրության նպատակով։ Ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում բնակարանային, կենցաղային ու կուլտուրական շինարարությունը գյուղում։ 1965—1977 թթ. ընթացքում գյուղի սոցիալական զարգացման մեջ կապիտալ ներդրումները գերազանցեցին 40 մլրդ ռուբլուց։

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը, այդ գործում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի մերձեցմանը նպաստում են ձեռքի, ցածր որակավորում ունեցող և ծանր ֆիզիկական աշխատանքի համակողմանի կրճատումը, աշխատանքի մեքենայացումն ու ինտելեկտուալացումը, նրա ստեղծագործական բնույթի ուժեղացումը, քաղաքում և գյուղում ծավալվող կուլտուրական վիթխարի շինարարությունը, որն իրականացվում է կուսակցության վերջին համագումարների կողմից առաջադրված մեծ ծրագրին համապատասխան։

Ընդարձակ են կուսակցության սոցիալական քաղաքականության շրջանակները, մեծ ու բազմապլան է նրա իրականացման գործնական ծրագիրը, որն ընդունել է ՍՄԿԿ XXV համագումարը։ Այդ ծրագրի հաջող կենսագործումը պայմանավորված է կուսակցական, պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների, սովետական բոլոր մարդկանց արդյունավետ աշխատանքով։

---

digitised by A.R.A.R.@

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՊԱՐՏՔՆ Է

**Գ. Խ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀՍՍՀ զինկոմիսարիատի բաղբաժնի պետ,
պատմական գիտությունների թեկնածու, գնդապետ

*ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՑ բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին պետության ծնունդը, սկիզբ դրեց մարդկության պատմության նոր դարագլխի։ Սովետական պետությունը դարձավ ամբողջ աշխարհի խաղաղության հզոր գործոն։ Այդ է վկայում նրա ողջ պատմությունը՝ սկսած հաշտության մասին լենինյան նշանավոր դեկրետից մինչև մեր օրերը։*

*Վ. Ի. Լենինն ստեղծեց մի ամբողջական ուսմունք սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին, որը դարձել է սովետական պետության ռազմական քաղաքականության, նոր տիպի բանակի գիտական հիմքը։ Այդ բանակը աներեր պաշտպանում է Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները սոցիալիստական հայրենիքի թշնամիներից։*

*Այսօր ևս առանձնապես հրատապ են հնչում Վ. Ի. Լենինի այն ցուցումները, որ «ով մոռանում է մեզ շարունակ սպառնացող վտանգի մասին, որը չի դադարի, քանի գոյություն ունի համաշխարհային իմպերիալիզմը, ով մոռանում է այդ մասին, նա մոռանում է մեր աշխատանքային հանրապետության մասին»* (Երկեր, *հ. 31, էջ 658)։ Մի այլ առիթով Վ. Ի. Լենինն ասում էր. «Բայց հենց այն պատճառով, որ մենք կողմնակից ենք հայրենիքի պաշտպանությանը, մենք պահանջում ենք լուրջ վերաբերվել երկրի պաշտպանունակությանն ու մարտական պատրաստությանը»* (Երկեր, *հ. 27, էջ 57)։*

*Սովետական զինված ուժերի ստեղծումը, դրանց կառուցման տեսական ու կազմակերպական սկզբունքների սահմանումը Վ. Ի. Լենինի կողմից հսկայական նշանակություն ունեցան աշխարհում առաջին սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունն ապահովելու համար։ Լենինը ոչ միայն դրեց նոր ռազմական կազմակերպության գիտական հիմքերը, այլև հիմնավորեց «սոցիալիստական հայրենիքի պաշտպանություն» հասկացությունը։ «Հայրենիքը,— գրում էր նա,— այսինքն տվյալ քաղաքական, կուլտուրական և սոցիալական միջավայրն ամենահզոր գործոնն է պրոլետարիատի դասակարգային կռվում...»* (Երկեր, *հ. 15, էջ 232)։*

*ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ ՍՍՀՄ զինված ուժերն իրենց պատվավոր տեղն են գրավում սովետների երկրի հասարակական կյանքում, նրա հերոսական պատմության մեջ։ Նրանք ռազմական փորձությունների տարիների միջով արժանավորությամբ տարան իրենց մարտական դրոշները, հաղթանակների անմար փառքով պսակեցին դրանք, և այժմ զգոն կերպով կատարում են իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքը։*

*Երկրի պաշտպանական հզորությունն ընդհանուր առմամբ որոշվում է տնտեսական, քաղաքական, գաղափարական ու ռազմական բնույթի գործոններով։*



*Այդ հիմքի վրա էլ մեր կուսակցությունը մշակում է սովետական ռազմական դոկտրինան, որը համապատասխանում է մեր պետության զարգացման մակարդակին, ժամանակակից պատերազմի բնույթին, այն վարելու ձևերին ու մեթոդներին։ Սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականության ու ամեն մի ագրեսորի արժանի հակահարված տալու նրա պատրաստակամության միասնությունը մեր ռազմական դոկտրինայի, զարգացած սոցիալիզմի հասարակության պայմաններում զինված ուժերի կառուցման ու պատրաստման ելակետային հիմքն են։*

*Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին լենինյան գաղափարները, երկրի պաշտպանությունը ամրապնդելու, բանակի ու նավատորմի մարտական հզորությունը բարձրացնելու մասին նրա ցուցումներն իրենց գիտականորեն հիմնավորված արտացոլումն ու հետագա զարգացումը գտան ՍՄԿԿ ծրագրում, կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում։*

*Կուսակցական փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում ու ելույթներում համակողմանիորեն ընդհանրացվել և գիտականորեն հիմնավորվել է սովետական ռազմական շինարարության փորձը, բացահայտվել ՍՍՀՄ զինված ուժերի հերոսական հաղթանակների ակունքները։ Հետագա զարգացում են ստացել բանակի ու նավատորմի հզորացման, երկրի պաշտպանունակության ամրապնդման, սովետական մարդկանց զգոնության բարձրացման և սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու մշտական պատրաստակամության ոգով նրանց դաստիարակելու տեսության ու պրակտիկայի, ռազմաքաղաքական կոնկրետ իրադրության պայմաններում սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին լենինյան ուսմունքի պրակտիկ կիրառման հարցերը։ Այս ամենն արտացոլվել ու մարմնավորվել են ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։*

*Պահպանելով ՍՍՀՄ նախորդ սահմանադրությունների հիմնական գաղափարներն ու սկզբունքները՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը հիմնավորում է երկրի պաշտպանությունն ամրապնդելու և Հոկտեմբերի հայրենիքը հուսալիորեն պաշտպանելու անհրաժեշտության դրույթները։ Մեր երկրի պատմության մեջ առաջին անգամ սովետական պետության Հիմնական օրենքում զետեղված «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը» գլխում շեշտված է, որ «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը պետության կարևորագույն ֆունկցիաներից է և հանդիսանում է ամբողջ ժողովրդի գործը։*

*Սոցիալիստական նվաճումները, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պաշտպանելու նպատակով ստեղծված են ՍՍՀՄ զինված ուժեր և սահմանված է ընդհանուր զինապարտություն։*

*Ժողովրդի հանդեպ ՍՍՀՄ զինված ուժերի պարտքն է՝ հուսալիորեն պաշտպանել սոցիալիստական հայրենիքը, լինել մշտական մարտական պատրաստության վիճակում, որը երաշխավորի անհապաղ հակահարված ամեն մի ագրեսորի»։*

*Նոր Սահմանադրության այս դրույթներում հուշակվում է մեր հայրենիքի պաշտպանության համաժողովրդական բնույթը։ Սահմանադրությունն արտացոլում է սոցիալիստական հայրենիքը, հեղափոխական նվաճումները, կոմունիզմ կառուցող ժողովրդի խաղաղ աշխատանքը պաշտպանելու անհրաժեշտության մասին լենինյան գաղափարները, բացահայտում սովետների երկրի ռազմական կազմակերպության պատմական կոչումը։ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Մեր բանակը դաստիարակված է սոցիալիստական հայրենիքին, խաղաղության ու ինտերնացիոնալիզմի գաղափարներին, ժողովուրդների բարեկամության գաղափարներին խոր նվիրվածության ոգով։ Սովետական բանակը հենց դրանով է տարբերվում բուրժուական բանակներից։ Սովետական մարդիկ հենց դրա համար են սիրում իրենց բանակը, հպարտանում նրանով»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 113)։*



digitised by A.R.A.R.@

Սովետական ռազմական շինարարության հիմքերի հիմքը կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է դրա նկատմամբ։ ՍՄԿԿ ղեկավար և ուղղություն տվող դերը, որն իր իրավական հաստատումն է ստացել ՍՍՀՄ նոր Սահմանադրության 6-րդ հոդվածում, սկզբունքային ու կարևոր նշանակություն ունի մեր պետության ռազմական կազմակերպության համար։ Կոմունիստական կուսակցությունն ուղղություն է տալիս և կոորդինացնում բոլոր պետական մարմինների ու հիմնարկությունների, ողջ սովետական ժողովրդի գործունեությունը՝ նպատակ ունենալով համակողմանիորեն ապահովել հայրենիքի հուսալի պաշտպանությունն ու անվտանգությունը։

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության գործում կարևորագույն դեր է պատկանում սովետական պետությանը, որը նոր հասարակարգի կառուցման հիմնական միջոցն է։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության 15-րդ և 16-րդ գլուխներում այդ կապակցությամբ սահմանված է պետական մարմինների իրավասությունը մեր հայրենիքի անվտանգության ապահովման բազմակողմանի խնդիրները լուծելու գործում։

ՍՍՀՄ Գերագույն սովետը, որպես պետական իշխանության բարձրագույն մարմին, իրավասու է լուծելու խաղաղության ու պատերազմի, Սովետական Միության սուվերենության պաշտպանության, նրա պետական սահմանների ու տերիտորիայի, երկրի պաշտպանության կազմակերպման և զինված ուժերի ղեկավարման բոլոր հարցերը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, որպես պետական իշխանության մշտապես գործող, կոլեկտիվ մարմին, ՍՍՀՄ նոր Սահմանադրության 15-րդ գլխի 121-րդ հոդվածի համաձայն, սահմանում և շնորհում է բարձրագույն զինվորական կոչումներ, կազմում ՍՍՀՄ պաշտպանության խորհուրդ և հաստատում նրա կազմը, նշանակում և փոխում է ՍՍՀՄ զինված ուժերի բարձրագույն հրամանատարությունը։ ՍՍՀՄ պաշտպանության շահերից ելնելով՝ նա հայտարարում է ռազմական դրություն առանձին վայրերում կամ ամբողջ երկրում, ընդհանուր կամ մասնակի զորահավաք, ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում պատերազմական վիճակ է հայտարարում ՍՍՀՄ-ի վրա ռազմական հարձակման դեպքում կամ այն դեպքում, երբ անհրաժեշտ է կատարել ագրեսիայից փոխադարձաբար պաշտպանվելու միջազգային պայմանագրային պարտավորությունները։

ՍՍՀՄ զինված ուժերի շինարարության ընդհանուր ղեկավարությունը, ինչպես նշված է ՍՍՀՄ Հիմնական օրենքի 16-րդ գլխի 131-րդ հոդվածում, իրականացնում է մեր երկրի պետական իշխանության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմինը՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, որը միջոցներ է ձեռնարկում՝ պաշտպանելու պետության շահերը, ապահովելու պետական անվտանգությունը, իրականացնում է ՍՍՀՄ զինված ուժերի շինարարության ընդհանուր ղեկավարությունը, որոշում է իսկական զինվորական ծառայության համար զորակոչի ենթակա քաղաքացիների ամենամյա կոնտինգենտը։ Անհրաժեշտության դեպքում նա կազմում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր տնտեսական, սոցիալ-կուլտուրական և պաշտպանական շինարարության գործերի կոմիտեներ, գլխավոր վարչություններ և այլ գերատեսչություններ, միավորում և ուղղություն է տալիս ընդհանուր-միութենական և միութենական-հանրապետական մինիստրությունների և ՍՍՀՄ պետական կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների աշխատանքին։

Պաշտպանական հարցերի լուծման գործում հսկայական դեր են կատարում պետական իշխանության տեղական մարմինները։ ՍՍՀՄ Սահմանադրության մեջ նշված է, որ ժողովրդական դեպուտատների սովետները տեղերում վերահսկողություն են իրականացնում, որպեսզի բոլոր քաղաքացիները խստորեն ու հստակորեն կատարեն «Ընդհանուր զինապարտության մասին» ՍՍՀՄ օրենքի պահանջները։ Նրանք լուծում են ԴՕՍԱԱՖ-ի ուսումնական կազմակերպություններում և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի ուսումնական հաստատություններում զինվորական մասնագետներ պատրաստելու, նախազորակոչային և զորակոչային երիտասարդության ռազմահայրենասիրական դաս-



տիարակության, նրանց սկզբնական ռազմական պատրաստության, բոլոր քաղաքացիների կողմից զինվորական հաշվառման կանոնների պահպանման, պատանիներին զորակոչային տեղամասերին կցելու, երիտասարդներին զորակոչելու և հանդիսավոր իրադրության մեջ ՍՍՀՄ զինված ուժերի շարքերն ուղարկելու, հիմնարկությունների ու ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և ուսումնական հաստատությունների, համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների կողմից օրենքի այդ և մյուս պահանջները կատարելու հարցերը։

ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ վառ արտացոլում են գտել բանակի ու ժողովրդի միասնության լենինյան գաղափարները։ Զինված ուժերի նկատմամբ եղած համաժողովրդական սերը սովետական ռազմիկների մեջ ամրապնդում է հայրենիքի, սոցիալիզմի նվաճումների պաշտպանության համար պատասխանատվության հայրենասիրական զգացումները և իրենց մարտական վարպետությունը անշեղորեն կատարելագործելու ձգտումը։

Սովետական բանակի ռազմիկների հետ ունեցած հանդիպման ժամանակ Լ. Ի. Բրեժնևը բարձր գնահատական տվեց նրանց մարտական ուսուցմանն ու վարպետությանը։ Դիմելով զինվորներին, սերժանտներին ու սպաներին՝ նա ասաց. «Կուսակցությունը և ժողովուրդը հպարտանում են սովետական զինված ուժերով։ Ուզում եմ վստահություն հայտնել, որ դուք այսուհետ ևս կլինեք մըշտական մարտական պատրաստության վիճակում, որն ապահովում է անհապաղ հակահարված ամեն մի ագրեսորի, պատվով կկատարեք ձեր սրբազան պարտքը մեր մեծ հայրենիքի, ժողովրդի հանդեպ»։

Սովետական մարդիկ խոր գիտակցությամբ են վերաբերվում իրենց սահմանադրական պարտքի կատարմանը։ Սահմանադրության մեջ ասված է, որ սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է (հոդված 62), իսկ ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում զինվորական ծառայությունը՝ սովետական քաղաքացիների պատվավոր պարտականությունը (հոդված 63)։ Սահմանադրության այս դրույթները վաղուց արդեն դարձել են սովետական երիտասարդության վարքագծի նորմեր։ Նրանք հետևում են իրենց պապերի, հայրերի ու ավագ եղբայրների օրինակին, բազմապատկում են կուսակցության և ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառապանծ ավանդույթները։

Ինչպես ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, այնպես էլ միութենական հանրապետությունների հիմնական օրենքներում սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը համարվում է մեր մեծ հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների սրբազան պարտքն ու գործը։ «Սովետական մարդիկ, որոնք մեծացել են ժողովուրդների եղբայրական ընտանիքում, դաստիարակվել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, իրենց բուն էությամբ ինտերնացիոնալիստներ են,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառում։— Ինտերնացիոնալիստական ավանդույթներն այսօր նրանց գործում մարմնավորվում են, թերևս, ավելի լայնորեն, ավելի բազմակողմանիորեն, քան երբևիցե»։ Այս ամենն իր կոնկրետ արտահայտությունն է գտնում բանակի ու նավատորմի ռազմիկների, սովետական բազմազգ ժողովրդի ներկայացուցիչների կյանքում, ապահովում բարձր հասումներ զորամասերի ու զորամիավորումների մարտական պատրաստության գործում։

Մեր բանակի ու նավատորմի զարգացման արդի փուլը բնութագրվում է այն բանով, որ աճում են յուրաքանչյուր ռազմիկի ակտիվությունն ու պատասխանատվությունը մարտական բարդ տեխնիկային հմուտ կերպով տիրապետելու, բանակի հուժկու զենքի ուժն ու հնարավորությունները Հոկտեմբերի նվաճումների, խաղաղության և ժողովուրդների անվտանգության պաշտպանության նպատակով ճիշտ կիրառելու համար։ Իսկ դա ենթադրում է տեղական կուսակցական, սովետական, կոմերիտական, պաշտպանական-մասսայական և այլ հասարակական կազմակերպությունների պատասխանատվության բարձրացում՝ երիտասարդությանը համակողմանիորեն ՍՍՀՄ զինված ուժերում ծառայության նախապատրաստելու համար։ Այդ խնդրի լուծման կարևոր պայմանը



digitised by A.R.A.R.@

զորակոչերը։ Ջգալիորեն բարձրացել է զորակոչվող պատանիների որակական բնութագիրը։ Այժմ մեր հանրապետության երիտասարդության ներկայացուցիչներն իրենց պատվավոր զինվորական ծառայությունն անցկացնում են գրեթե բոլոր օկրուգներում, խմբերում, զորատեսակներում և ծովային տարածքներում, պատվով ու արժանավայել կատարում իրենց սրբազան պարտքը հայրենիքի հանդեպ։ Այս ամենը վկայում է, որ տեղական կուսակցական, սովետական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպություններ նկատելիորեն ակտիվացրել են երիտասարդ սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակության գործը։

Հանրապետության երիտասարդության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության նպատակամղված աշխատանքը նոր թափ ստացավ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակի նախապատրաստության և տոնակատարության ժամանակ։ Այդ տարելիցը հանրապետության աշխատավորների շրջանում առաջացրեց քաղաքական ու աշխատանքային հսկայական ոգևորություն, ստեղծագործական ուժերի հորդում՝ կոմունիստական շինարարության գործում նորանոր հաղթանակների համար մղվող պայքարում։

Հանրապետության աշխատավորներն ու երիտասարդները մեծ ոգևորությամբ ընդունեցին Հայկական ՍՍՀ-ի պարգևատրումը Լենինի շքանշանով և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը։ Հայաստանի աշխատավորների տոնը դարձավ ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության իդեալների հաղթանակի արտահայտություն, վերածվեց սովետական մարդկանց հայրենասիրության, հարազատ լենինյան կուսակցության, նրա մարտական շտաբի՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի շուրջը նրանց համախմբվածության վառ ցույցի։

ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը, ակտիվ ու վճռական պայքար մղելով խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար, ագրեսիվ և ռեակցիոն ուժերի ու սպառազինությունների մրցավազքի դեմ, ղեկավարվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան ուսմունքով, մշտական ու անխոնջ հոգատարություն են ցուցաբերում սովետական ժողովրդի, բանակի ու նավատորմի մարտիկների քաղաքական զգոնությունը բարձրացնելու, Սովետական Միության պաշտպանունակությունը ամրապնդելու նկատմամբ, սոցիալիստական եղբայրական երկրների հետ համատեղ ամեն կերպ ամրապնդում են Վարշավայի պայմանագրի պետությունների մարտական համագործակցությունը՝ որպես աշխարհի խաղաղության պահպանման հզոր գործոն։

Խաղաղօվկիանոսյան նավատորմ կատարած այցելության ժամանակ, հանդես գալով ծովայինների առջև, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք ոչ ոքի չենք սպառնում։ Այսպես կոչված՝ «սովետական սպառնալիքի» մասին խոսակցությունները միջազգային լարվածության թուլացման հակառակորդների հերյուրանքն են և ոչ ավելի։ Մենք կատարելագործում ենք մեր պաշտպանությունը միայն մեկ նպատակով՝ հուսալիորեն պաշտպանել մեծ Հոկտեմբերի նվաճումը, ամուր պահպանել սովետական մարդկանց, մեր բարեկամների ու դաշնակիցների խաղաղ աշխատանքը։ Այդ ազնիվ նպատակին են ծառայում սովետական բանակի և ռազմածովային նավատորմի ռազմիկները»։

Այս փուլում խնդիրներն ու նպատակները բխում են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքից, որն իր վառ մարմնավորումն է գտել զարգացած սոցիալիզմի Սահմանադրության մեջ։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Մ. Գ. ՎԱՍԻԼՅԱՆ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հաստատեց համակողմանի հիմնավորված միջոցառումների ծրագիր, որի նպատակն է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման և տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործումը։ Արտադրության արդյունավետության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման ասպարեզում կուսակցության առաջադրած խնդիրների լուծումը պահանջում է արագացնել ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործումը, տնտեսական խթանների և լծակների առավել հմուտ օգտագործումը, կառավարման կազմակերպական կառուցվածքի բարելավումը։

Նշված միջոցառումների կոմպլեքսում, որն ընդգրկում է մեր տնտեսության ղեկավարման հիմնական կողմերը, կարևոր տեղ է գրավում արդյունաբերության կառավարման կազմակերպական կառուցվածքի հետագա կատարելագործումը՝ արտադրական, գիտաարտադրական և համամիութենական (հանրապետական) միավորումների ստեղծման միջոցով։

Երկրում առաջին արտադրամիավորումները կազմակերպվեցին 60-ական թվականների սկզբներին և տարածվեցին արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում։ 1964 թ. երկրի արդյունաբերության մեջ գործում էին 410 միավորումներ, 1970 թ.՝ 608, իսկ 1975 թ.՝ 2.300։

Արդյունաբերության ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաների հիման վրա այժմ շարունակվում է միավորումների ստեղծումը։ 1978 թ. սկզբում արտադրական և գիտաարտադրական միավորումների թիվը երկրի արդյունաբերության մեջ կազմեց 3.670, որոնց բաժին էր ընկնում իրացված արտադրանքի 44,3 տոկոսը։ ՀՍՍՀ արդյունաբերության մեջ 1970 թ. կազմակերպված էր 7 միավորում, 1975 թ.՝ 36, իսկ 1978 թ.՝ 71 միավորում, որոնց արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում արդեն կազմում է 48,6 տոկոս։

Միավորումների ստեղծումն առանձնապես մեծ թափ ստացավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1973 թ. մարտի 2-ի՝ «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին» որոշմամբ։ Այսպես, եթե մինչև 1973 թ. երկրի արդյունաբերության մեջ ստեղծվել էին 1.101 միավորում, իսկ մեր հանրապետությունում՝ 19, ապա 1974—1977 թթ. ընթացքում՝ համապատասխանաբար 2.569 և 52 միավորում։

ՍՄԿԿ XXV համագումարի հաստատած «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում» խնդիր է դրված. «Արդյունաբերության մեջ, կառավարման գլխավոր սխեմաներին համապատասխան, ավարտել միավորումների ստեղծումը, շարունակել արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման, կառավարման կառուցվածքի բարելավման և օղակների թվի կրճատման աշխատանքը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 257)։

Այսպիսով, կուսակցության կանխագծումների համապատասխան, տնտե-



digitised by A.R.A.R.@

բորդ հնգամյակի վերջում ձեռնարկությունների (գործարանների և ֆաբրիկաների) փոխարեն հանրային արտադրության հիմնական օղակ պետք է դառնան արտադրամիավորումները։

Արտադրամիավորումների դերն ու նշանակությունն ամենից առաջ այն է, որ դրանց կազմակերպումը սերտորեն կապված է արտադրության կազմակերպման առաջադիմական ձևերի և, առաջին հերթին, արտադրության համակենտրոնացման հետ։ Արտադրության համակենտրոնացումը նախադրյալներ է ստեղծում աշխատանքի հետագա բաժանման, արտադրության մասնագիտացման խորացման և կոոպերացման զարգացման համար։ Սոցիալիստական արտադրության համակենտրոնացումը պահանջում է խոշոր ձեռնարկություններում համասեռ արտադրանքի թողարկումը կենտրոնացնել այնպես, որ հնարավոր լինի լայնորեն օգտագործել մասսայական և սերիական արտադրության առավելությունները, դրանով իսկ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և ավելացնել կուտակումները։

Ինչպես ցույց է տալիս տնտեսավարման պրակտիկան, առանձին գործող ֆաբրիկաներն ու գործարանները այդպիսի հնարավորություններից գրեթե զուրկ են։ Ժամանակակից պայմաններում, երբ բնութագրվում է արտադրության ինտենսիվ շերտավորմամբ, արտադրանքի նորանոր տեսակների առաջացմամբ, տնտեսական կապերի հետագա բարդացմամբ, տնտեսապես ինքնուրույն և առանձնացված ձեռնարկությունների հնարավորություններն այդ բնագավառում անխուսափելիորեն նվազում են, զգալի դժվարություններ են առաջանում էկոնոմիկայի արագ աճի և դրա արդյունավետության բարձրացման գործում։

Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ դեռևս խիստ մեծ է նաև մանր ձեռնարկությունների թիվը երկրի արդյունաբերության մեջ, որոնց արտադրության արդյունավետության բարձրացման հնարավորություններն առանձնապես սահմանափակ են։ Թեև արտադրության համակենտրոնացման մակարդակով մեր երկիրն աշխարհում գրավում է առաջին տեղը, այնուհանդերձ, արդյունաբերության մեջ մինչև վերջերս գերակշռում էին մանր ձեռնարկությունները։ Այսպես, մինչև 200 բանվոր ունեցող մանր ձեռնարկությունները, որոնք երկրի արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր թվում կազմում էին 54,6 տոկոս, թողարկում էին արդյունաբերական արտադրանքի միայն 10,1 տոկոսը («Народное хозяйство СССР в 1973 г.», Стат. ежегодник, М., «Статистика», 1974, стр. 244)։ Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում էին 56,3 և 12,8 տոկոս («Народное хозяйство Армянской ССР за 1973 г.», Стат. ежегодник, Ереван, 1974, стр. 62)։

Մանր գործարանների գերակշռող մասը թույլ է մասնագիտացված, հաճախ թողարկում է ցածրորակ արտադրատեսակներ։ Քանի որ այդպիսի ձեռնարկություններում արտադրության ծավալը փոքր է, հնարավոր չէ մեքենայացնել ու ավտոմատացնել արտադրապրոցեսները, արդյունավետ օգտագործել բարձր արտադրողական տեխնիկան։

Առանձին ինքնուրույն ձեռնարկություններում անխուսափելի են դժվարությունները նաև արտադրության կոոպերացման ասպարեզում։ Վերադաս տնտեսական մարմինների կողմից տասնյակ հազարավոր ինքնուրույն ձեռնարկությունների միջև անհրաժեշտ կապերի կազմակերպումը չափազանց բարդ է, ոչ բավականաչափ ճկուն և օպերատիվ։ Կենտրոնից գրեթե անհնար է ապահովել բազմաթիվ ձեռնարկությունների համագործակցությունը։ Այդ, ինչպես նաև արտադրության կոոպերացման տնտեսական-պայմանագրային ձևերի թույլ զարգացման հետևանքով դեռևս բավականաչափ կայուն չեն ձեռնարկությունների տնտեսական կապերը։ Պայմանագրային հարաբերությունների ձևական բնույթը խոչընդոտում է արտադրության մասնագիտացմանը, ձեռնարկությունները ստիպված են լինում ներքին սպառման նպատակով թողարկել բազմաթիվ արտադրատեսակներ, վերջնական արդյունքի պատրաստման համար անհրաժեշտ կիսաֆաբրիկատներ, հանգույցներ և դետալներ։ Երկրի յուրաքանչյուր 100 մեքենաշինական գործարաններից 99-ը արտադրում է ատամնավոր անիվներ, 65-ը՝ ամրակման մետաղյա շինվածքներ, 71-ը՝ չուգունե ձուլվածք, 84-ը՝ կռածո կտորներ, 57-ը՝ գունավոր ձուլվածք (А. А. Аракелян, Научно-технический прогресс в СССР, «Айастан», 1978, стр. 75)։ Բնականաբար, ձեռնարկությունների «ինքնասպասարկման» պայմաններում արտադրանքի ներքին պահանջմունքների սահմանափակ ծավալը հնարավորություն չի ընձեռում օգտագործելու բարձր արտադրողական մասնագիտացված տեխնիկա։

Սոցիալիստական տնտեսավարման փորձը ցույց է տալիս, որ մանր գործարանների ու ֆաբրիկաների պրոբլեմը լուծելու հիմնական ուղին արտադրամիավորումների ստեղծումն է, որն իրականացվում է նույնատիպ արտադրանք թողարկող մանր ձեռնարկությունները խոշոր, տեխնիկապես առաջավոր գլխամասային ձեռնարկության շուրջը կենտրոնացնելու միջոցով։ Այստեղ մանր ձեռնարկությունները դառնում են արտադրական միավորման մասնաճյուղեր։

Արտադրամիավորումների կազմակերպումը լայն հնարավորություններ է ընձեռում առանց խոշոր կապիտալ ներդրումների վերակառուցելու և մասնագիտացնելու արտադրությունը՝ դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծելու արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Որպես կանոն, միավորումների կազմակերպումն ուղեկցվում է դրանց կազմում ընդգրկված ձեռնարկությունների մասնագիտացմամբ։ Համասեռ արտադրանքի թողարկումը կամ նույնատիպ տեխնոլոգիական պրոցեսները կենտրոնացվում են միավորման այն մասնաճյուղերում, որոնք համապատասխանում են տվյալ արտադրանքի պրոֆիլին և նպաստավոր պայմաններ ունեն դրա համար։

Միավորման կազմում ընդգրկված յուրաքանչյուր արտադրական օղակ մասնագիտանում է արտադրանքի առանձին հանգույցների, դետալների թողարկման, կամ պատրաստի արտադրանքի հավաքման, որոշ տեխնոլոգիական օպերացիաների կատարման գործում։ Դրա շնորհիվ թողարկվող արտադրանքի անվանացանկը մնում է նույնը կամ ընդլայնվում, իսկ յուրաքանչյուր մասնաճյուղում արտադրատեսակների քանակը և կատարվող տեխնոլոգիական օպերացիաների բազմազանությունը նվազում է։ Ըստ որում, այդ հանգույցների, դետալների նկատմամբ միավորման ներքին մեծ պահանջարկը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում մասնաճյուղերում բարձր արտադրողական մասնագիտացված տեխնիկայի լայն կիրառման համար։

Միավորումներում պայմանները նպաստավոր են նաև օժանդակ ու նախապատրաստական արտադրության կենտրոնացման համար։ Դրա շնորհիվ հիմնվում են օժանդակ ու նախապատրաստական օղակներ, որոնք սպասարկում են համալիրի բոլոր ստորաբաժանումներին։ Դա հնարավորություն է ընձեռում արագորեն բարձրացնելու արտադրության մեքենայացման ու ավտոմատացման աստիճանը և արմատավորելու արտադրության կազմակերպման առաջավոր ձևեր։

Արտադրության մասնագիտացման բնագավառում հատկապես մեծ նվաճումների են հասել հանրապետության կոշիկի «Մասիս» և էլեկտրատեխնիկական արդյունաբերության «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրասարքավորում» արտադրամիավորումները։ Մինչև «Մասիս» միավորման կազմակերպումը (1963 թ.), հանրապետության ժողտնտխորհի ենթակայության տակ գործում էին կոշիկի 12 ֆաբրիկա, որոնք, թեև տեղաբաշխված էին իրարից ոչ հեռու, այդուհանդերձ գործում էին միմյանցից անջատ՝ առանց փոխադարձ կապերի։ Ֆաբրիկաների մեծ մասը զուգահեռաբար թողարկում էր նույն արտադրանքը, իսկ յուրաքանչյուր ֆաբրիկա իր հերթին արտադրում էր մի քանի խմբի պատկանող կոշիկներ։ Միավորման ստեղծումից հետո, միևնույն արտադրանքի կրկնորդումը վերացնելու նպատակով, ֆաբրիկաների միջև վերաբաշխվել է արտադրանքի անվանացանկը։ Այն հնարավորություն է ընձեռել յուրաքանչյուր ֆաբրիկա մասնագիտացնելու կոշիկի ոչ մեծ խմբի միատեսակ արտադրանքի թողարկման ասպարեզում, ընդլայնելու կոշիկի տեսականին, բարձրացնելու արտադրանքի որակը, կենտրոնացնելու կաշվի կտրումը, պահեստամասերի պատրաստումը, հիմնական նորոգումը, օժանդակ նյութերի մատակարարումը։ Այժմ կոշիկի





digitised by A.R.A.R.@

№ 4 ֆաբրիկան մասնագիտացված է մոդելային, № 6-ը՝ նրբագեղ կոշիկների, իսկ գլխադասը՝ մանկական կոշիկների արտադրության գծով։

Արտադրության մասնագիտացման ասպարեզում զգալի հաջողությունների է հասել նաև «Հայէլեկտրալույս» միավորումը, որի կազմում ընդգրկված ութ ձեռնարկությունների առարկայական մասնագիտացման մակարդակը կազմում է 90—100 տոկոս։ Լյումինեսցենտային լուսատուները, որոնք նախկինում թողարկվում էին միավորման հինգ մասնաճյուղերում, այժմ կենտրոնացված են երկու մասնաճյուղում, իսկ մյուս երեքը մասնագիտացվել են դետալների և հանգույցների արտադրության մեջ։

Արտադրամիավորումների ստեղծումը չափազանց մեծ նշանակություն ունի նաև գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար։ Ներկայումս «գիտություն-տեխնիկա-արտադրություն» բարդ շղթայում ամենաթույլն այն օղակներն են, որոնք կապված են գիտության նվաճումները գործնականորեն կիրառելու, դրանք մասսայական արտադրության մեջ արմատավորելու հետ։ Այդ օղակներն են՝ գործարանային գիտահետազոտական լաբորատորիաները, կոնստրուկտորական բյուրոները, տեխնոլոգիական ծառայությունները, փորձնական-փորձարարական արտադրամասերը, ինֆորմացիոն կենտրոնները և այլն։

Պրակտիկան ցույց է տալիս, որ անհրաժեշտ է հենց արտադրության մեջ ընդլայնել հետազոտություններն ու մշակումները, ձեռնարկություններում ստեղծել խոշոր գիտատեխնիկական կազմակերպություններ, ամրապնդել փորձնական բազաները, ապահովել մեծ թվով գիտական կադրերի ներհոսքը արտադրություն։ Այս ամենը, բնականաբար, ի վիճակի են կատարել միայն խոշոր միավորումները, մի բան, որը դրանց ստեղծումն առանձնապես հրատապ է դարձնում։ Հատկապես լուրջ արդյունք է տալիս ձեռնարկությունների հետ գիտատեխնիկական հաստատությունների կազմակերպական միավորումը՝ գիտաարտադրական հզոր կոմպլեքսների ստեղծումը։

Արտադրամիավորումների համար հաստատված կանոնադրության համապատասխան, միավորումների գլխավոր խնդիրներից մեկը արտադրության զարգացումն ու կատարելագործումն է, գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն օգտագործումը, «գիտություն-արտադրություն» փուլի կրճատումը, հետազոտությունների և մշակումների արդյունքների օգտագործման արդյունավետության բարձրացումը։

Այդ նպատակով արտադրամիավորումներում, բացի ֆաբրիկաներից և գործարաններից, ընդգրկվում են նաև գիտահետազոտական ինստիտուտները, նախագծային, կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունները։ Արտադրամիավորումների ստեղծումը հնարավորություն է ընձեռում կենտրոնացնելու ընդգրկված ձեռնարկությունների գիտատեխնիկական ստորաբաժանումները և դրանց հիման վրա ստեղծելու խոշոր ու հզոր կոնստրուկտորական բյուրոներ, լաբորատորիաներ, ապահովելու այդ օղակների համաձայնեցված գործունեությունը, սիստեմատիկաբար լուծելու գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրները։

Ճյուղային, ակադեմիական գիտահետազոտական ինստիտուտների և առանձին գիտատեխնիկական կազմակերպությունների նկատմամբ միավորումների առավելություններից մեկն այն է, որ այստեղ կրճատվում են նոր տեխնիկայի մշակման, յուրացման և ներդրման հաջորդական փուլերի միջև ընկած ժամանակի կորուստները ու դրանով իսկ կանխվում նոր տեխնիկայի բարոյական հնացումը։

Գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում արտադրամիավորումների առավելությունն այն է, որ դրանք կենտրոնացնում են անհրաժեշտ նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները, որակյալ կադրերը և նպատակամղում դրանք գիտության ու տեխնիկայի զարգացման կարևորագույն խնդիրների լուծմանը։ Արտադրամիավորումների գործունեության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ գիտության և արտադրության համատեղ գոր-



ծունեության շնորհիվ նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման ժամկետները կրճատվում են մոտ 2 անգամ։

Գիտության և արտադրության կապի լավագույն օրինակ կարող է ծառայել մեր հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման ստեղծումը, որի կազմում, բացի ձեռնարկություններից, ընդգրկված են նաև երկու կոնստրուկտորական բյուրո և թողարկվող արտադրանքի փորձարկման երեք լաբորատորիա։ Դրանց գործունեության շնորհիվ իններորդ հնգամյակի տարիներին, 1970 թ. համեմատությամբ, լրիվին նորացվել է լուսատեխնիկական արտադրանքի տեսականին։ Լույսի աղբյուրների նոր տեսակների մշակման և թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման խնդիրները լուծում է «Հայէլեկտրալույս» միավորման գլխամասային գործարանի հատուկ կոնստրուկտորական բյուրոն (ՀԿԲ)։ Միավորման կազմում ՀԿԲ-ի կողմից մշակվող գիտահետազոտական և փորձնակոնստրուկտորական աշխատանքների ծավալն աճել է ավելի քան երկու անգամ։

«Հայէլեկտրալույս» միավորման գործունեության ընթացքում իրականացվել են ավելի քան 2.000 կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ, որոնց տնտեսական արդյունավետությունը կազմում է մոտ 4 մլն ռուբլի, իսկ պայմանականորեն ազատված աշխատողների թիվը՝ ավելի քան 2.000։ Այստեղ է կատարվել նաև էներգիայի խնայողաբար օգտագործման լույսի աղբյուրների՝ բարձր ճնշման նատրիումական լամպերի մշակումը։ «Հայէլեկտրալույս» միավորման ՀԿԲ-ի գործունեության շնորհիվ տարեցտարի մեծանում են էլեկտրական լամպերի երկարակեցությունը, հուսալիությունը և բարելավվում են դրանց տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշները։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման բնագավառում զգալի փորձ է կուտակված նաև «Հայէլեկտրամեքենա» և «Հայէլեկտրաշարժիչ» միավորումներում, որոնցից յուրաքանչյուրի կազմում ընդգրկված է մեկ խոշոր գիտահետազոտական ինստիտուտ։ «Հայէլեկտրամեքենա» միավորման գլխամասային՝ էլեկտրամեքենաշինական գործարանի և միավորման կազմում ընդգրկված կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական ԳՀԻ-ի ամուր կապերի մասին է վկայում այն, որ ինստիտուտի մշակումների ավելի քան 60 տոկոսը կատարվում է միավորման համար, իսկ հետագայում այդ բաժինը նախատեսված է ավելի մեծացնել։ Ինստիտուտի հիմնական խնդիրն է արագացնել տեխնոլոգիական առաջավոր պրոցեսների և սարքավորումների մշակումն ու արմատավորումը՝ միավորման կողմից թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը բարձրացնելու նպատակով։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով արտադրամիավորումների հետ համատեղ այժմ ստեղծվում են նաև գիտաարտադրական միավորումներ (ԳԱՄ), որոնք ընդգրկում են գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային և տեխնոլոգիական կազմակերպություններ, փորձնական գործարաններ և այլն։ Կազմակերպական տեսակետից արտադրամիավորման և ԳԱՄ-ի հիմնական տարբերությունն այն է, որ առաջինում որպես գլխադաս, առաջատար կազմակերպություն հանդես է գալիս խոշոր ձեռնարկությունը, իսկ երկրորդում՝ խոշոր գիտահետազոտական ինստիտուտը։

Ներկայումս երկրի ժողովրդական տնտեսության մեջ գործում են մոտ 130 գիտաարտադրական միավորումներ, որոնցում գիտատեխնիկական մշակումների միջին տևողությունը կրճատվում է 2—3 անգամ, բարձրանում են դրանց որակը և արդյունավետությունը։

Արտադրամիավորումների ստեղծման շնորհիվ կատարելագործվում է նաև արդյունաբերության կառավարման կառուցվածքը. կառավարման բազմաթիվ օղակները փոխարինվում են երկօղակ և եռօղակ համակարգով։ Այլ խոսքով, պարզեցվում է արդյունաբերության ճյուղային կառավարումը, վերանում է կառավարման բազմաստիճանությունը, պայմաններ են ստեղծվում վերադաս տնտեսական մարմիններն արտադրությանը մոտեցնելու, կառավարման տարբեր օղակների միջև ֆունկցիաները հստակորեն սահմանազատելու, վերադաս



digitised by A.R.A.R.@

տնտեսական մարմինների աշխատանքի օպերատիվությունն ու ճկունությունը
բարձրացնելու համար։
Միավորումներում արտադրատնտեսական կարևորագույն ֆունկցիաները
կենտրոնացվում են, որն իրականացվում է ընդգրկված ձեռնարկությունների
մանր տնտեսական օղակների, ֆունկցիոնալ բաժինների թիվը կրճատելու և
կենտրոնացված ու մասնագիտացված ծառայություններ ստեղծելու միջոցով։
Արտադրատնտեսական ֆունկցիաների կենտրոնացման շնորհիվ արտա-
դրության կառավարումն ու սպասարկումը դառնում են գործնական, ճկուն և ար-
դյունավետ, կրճատվում-են վարչակառավարչական ծախսերը։ «Հայէլեկտրա-
լույս» միավորումում կենտրոնացվել են նոր տեխնիկայի արմատավորման,
կապիտալ շինարարության, մատակարարման, իրացման աշխատանքները,
պլանավորումը, նորմաների ու նորմատիվների մշակումը, հաշվառումը, հաշ-
վետվությունը և այլն։ 1977 թ. միավորման արտադրանքի ծավալը, 1966 թ.
համեմատությամբ, աճել է 3 անգամ, մինչդեռ վարչակառավարչական անձնա-
կազմի պահպանման ծախսերը կրճատվել են 638 հազար ռուբլով։ Միաժամա-
նակ համալիրում ստեղծվել են նոր, խիստ անհրաժեշտ կենտրոնացված ծառա-
յություններ ու բաժիններ (նոր տեխնիկայի, լուսատեխնիկայի, կոնստրուկտո-
րական-տեխնոլոգիական, որակի տեսչության, կոմպլեկտավորման բաժիններ
և այլն)։ Ընդ որում, արտադրության կառավարման ֆունկցիաների վերաբաշխ-
ման ու կենտրոնացման շնորհիվ միավորման վարչության ապարատը ոչ միայն
չի մեծացել, այլև կրճատվել է 220 միավորով։

Միավորումներում լայնորեն օգտագործվում են արտադրության կառա-
վարման ավտոմատացված սիստեմներ (ԿԱՍ), որոնք խարսխվում են կիբեռ-
նետիկայի, տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելների և էլեկտրոնային
հաշվողական մեքենաների կիրառման վրա։ Հաշվարկված է, որ ԿԱՍ-երի ներ-
դրումը հնարավորություն է ընձեռում միջին հաշվով 5—10 տոկոսով բարձրաց-
նելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնար-
ժեքը, կրճատելու նյութերի և կոմպլեկտավորող իրերի պաշարները։

Եթե առանձին, առավելապես մանր ձեռնարկություններում, ԿԱՍ-երի
ստեղծումը մեծ դժվարությունների է հանդիպում, ապա միավորումներում
դրանց կիրառումը կենսականորեն անհրաժեշտ է ու տնտեսապես արդյունա-
վետ։ Միավորումներն իրականացնում են ընդգրկված ձեռնարկությունների օ-
պերատիվ ղեկավարությունը և պատասխանատվություն են կրում ամբողջ հա-
մալիրի գործունեության համար։ Այդ կապակցությամբ օբյեկտիվորեն մեծա-
նում է ինֆորմացիայի արագացման պահանջը։ Այստեղ ԿԱՍ-երի կիրառումը
նպաստում է արտադրական ու տնտեսական պրոցեսների օպերատիվ կոորդի-
նացմանը, միավորման տարբեր մասնաճյուղերի միջև օպտիմալ կապերի հաս-
տատմանը։

Միավորումների ստեղծումը պայմանավորված է նաև արտադրության
պլանավորման և տնտեսական խթանման մեխանիզմի հետագա կատարելա-
գործման անհրաժեշտությամբ։ Երկրում տնտեսական ռեֆորմի իրականացման
ընթացքը ցույց տվեց, որ հաճախ մանր ու միջակ ֆաբրիկաների և գործարան-
ների առկայության պայմաններում զգալի դժվարություններ են ծագում պլա-
նավորման և տնտեսական խթանման նոր համակարգի սկզբունքների արմա-
տավորման գործում։ Ռեֆորմի պայմաններում զգալիորեն ընդլայնվեց ձեռ-
նարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, նպաստավոր պայմաններ
ստեղծվեց դրանց նախաձեռնության զարգացման համար։ Սակայն պրակտի-
կան ցույց տվեց, որ հաճախ մանր և միջակ ձեռնարկությունները չեն կարողա-
նում ըստ ամենայնի լուծել մի շարք կարևոր տնտեսական և տեխնիկական
խնդիրներ՝ ստեղծել մատակարարման և իրացման նորմալ պայմաններ, ար-
դյունավետ օգտագործել տնտեսական խթանման ֆոնդերը, հատկապես արտա-
դրության զարգացման ֆոնդը, որի ստեղծման հիմնական նպատակը արտա-
դրության տեխնիկական վերակառուցումն ու վերազինումն է։
Տնտեսավարման փորձը ցույց է տալիս, որ տնտեսական ռեֆորմի սկզ-
բունքներն առավել հետևողականությամբ են իրականացվում օպտիմալ չափե-



րով խոշոր գործարաններում և արտադրամիավորումներում։ Այստեղ ավելի
արդյունավետ է կիրառվում ռեֆորմի գլխավոր սկզբունքը՝ պետական կենտրո-
նացված պլանային ղեկավարման և ձեռնարկությունների տնտեսական ինք-
նուրույնության զուգակցումը։ Միավորման մասնաճյուղերի տնտեսական
գործունեությունը կոորդինացնում են տվյալ համալիրի ընդհանուր ղե-
կավարությունը և միավորման դիրեկտորների խորհուրդը, իսկ տնտհաշվարկա-
յին հարաբերությունները իրականացվում են հնգամյա և տարեկան պլանների
սահմաններում, դրանով իսկ պայմաններ ստեղծելով պետության և միավոր-
ման տնտեսական շահերի զուգակցման ու ներդաշնակ զարգացման համար։
Միավորումների կազմակերպումը նպաստում է լրիվ տնտհաշվարկի ար-
մատավորմանը։ Ինչպես հայտնի է, առանձին գործող ֆաբրիկաներում և գոր-
ծարաններում փոխհատուցվում են արտադրության և իրացման հետ կապված
ոչ բոլոր ծախսերը։ Այսպես, գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկ-
տորական (ամբողջությամբ), նոր տեխնիկայի յուրացման (մասնակիորեն),
առևտրական կոնյունկտուրայի ուսումնասիրման ծախսերը կատարվում են ոչ
թե ձեռնարկության, այլ պետական բյուջեի հաշվին։ Նոր շինարարության,
բարձրորակ կադրերի պատրաստման, ինչպես նաև աշխատողների բուժսպա-
սարկման ծախսերը ևս ձեռնարկությունները միայն մասնակի են փոխհատու-
ցում։ Մինչդեռ արտադրամիավորումները մեծ հնարավորություններ ունեն ա-
ռավել լրիվ հաշվի առնել ընթացիկ և կապիտալ ծախսերը, դրանք համադրել
ստացված արդյունքների հետ, փոխհատուցել բոլոր ծախսերը և ապահովել ան-
հրաժեշտ շահույթի ստացումը, իսկ դա խիստ կարևոր է պետական բյուջեի
հանդեպ պարտավորությունների կատարման և տնտեսական խթանման ֆոն-
դերի ստեղծման համար։ Ավելին, բացի տնտեսական խթանման երեք ֆոնդե-
րից, միավորման մասնաճյուղերի շահույթի հաշվին ստեղծվում են նաև մի շարք
տնտեսական խթանման կենտրոնացված ֆոնդեր և ռեզերվներ, որոնք ծառա-
յում են որպես լրացուցիչ նյութական բազա՝ միավորման մասշտաբով ընդլայն-
ված վերարտադրությունն իրականացնելու համար։ Մասնավորապես, միավո-
րումներում արտադրության զարգացման և սոցիալ-կուլտուրական միջոցա-
ռումների ու բնակարանային շինարարության կենտրոնացված միջոցները առա-
ջին հերթին օգտագործվում են միավորման այն մասնաճյուղերի արտադրության
վերազինման և սոցիալական զարգացման համար, որոնք ամբողջ միավորման
շահերի տեսակետից դրա խիստ կարիքն ունեն։
Արտադրամիավորումների կազմակերպումը նպաստում է նաև հանրապե-
տության տարբեր շրջաններում բնակչության զբաղվածության մակարդակների
հավասարեցման խնդրի լուծմանը և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ
օգտագործմանը։ Այդ ձեռք է բերվում շնորհիվ այն բանի, որ միավորումները
փոքր և միջակ քաղաքներում ու գյուղական վայրերում ստեղծում են մասնա-
գիտացված մասնաճյուղեր և արտադրամասեր։
Արտադրամիավորումների տնտեսական գործունեությունը ցույց է տալիս,
որ դրանք նախադրյալներ են ստեղծում հանրային արտադրության արդյունա-
վետության արագ բարձրացման համար։ Որպես կանոն, միավորումներում
արտադրության արդյունավետության ցուցանիշների աճի տեմպերն ավելի
բարձր են համապատասխան արդյունաբերական ճյուղի միջին ցուցանիշների
աճի համեմատությամբ։
Այսպիսով, միավորումները արտադրության կազմակերպման և կառա-
վարման պրոգրեսիվ ձև են, որոնց կազմակերպումն ու հետագա զարգացումը
հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն
ռեզերվներից են։

---



digitised by A.R.A.R.@

# ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

Լ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ

«Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից, ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում... բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»:

(ՍՍՀՄ Սահմանադրությունից)

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՄԻ ՇԱՐՔ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ, առանձնապես ԱՄՆ-ում, վերջին երկու տասնամյակում լույս են տեսել բազմաթիվ աշխատություններ ու հոդվածներ, որոնցում փորձ է արվում ցույց տալու մարդկային քաղաքակրթությանն սպառնացող էկոլոգիական ճգնաժամի առաջացման պատճառները և այդ վիճակից ելք գտնելու ուղիները: Արևմտյան գիտնականների մեծ մասի կարծիքով էկոլոգիական ճգնաժամը, որպես համընդհանուր երևույթ, արդեն բախում է համաշխարհային քաղաքակրթության դռները: Նրանց համոզմամբ ոչ մի երկիր ունակ չէ դիմագրավելու դրան, քանի որ այն արդի գիտատեխնիկական առաջընթացի և տնտեսական աճի անբաժան ուղեկիցն է: Վաղ թե ուշ, պնդում են նրանք, բոլոր երկրների դռները կբացվեն այդ անցանկալի հյուրի առջև: Չնայած նման հոռետեսական հայացքներին, այնուամենայնիվ, արևմտյան աշխարհում բազմաթիվ ծրագրեր և ուղիներ են նշվում ժամանակակից էկոլոգիական ճգնաժամի սպառնալիքից խուսափելու համար:

Հնարավոր չէ մեկ հոդվածում, թեկուզև համառոտակի, անդրադառնալ էկոլոգիական ճգնաժամի առաջացման բոլոր կողմերին. այստեղ կանդրադառնանք միայն դրա սոցիալական ասպեկտին: Դրա անհրաժեշտությունը պայմանավորված է այն հանգամանքով, որ բուրժուական գրականության մեջ արդի էկոլոգիական ճգնաժամը պայմանավորող երևույթներից սոցիալական ֆենոմենը համարվում է ոչ թե առաջնային, այլ երկրորդական գործոն:

Մարքս-լենինյան սոցիոլոգիայի դիրքերից ջանացել ենք ցույց տալ, որ ժամանակակից էկոլոգիական ճգնաժամն ունի ամենից առաջ սոցիալական պայմանավորվածություն: Դա խորանում է ոչ թե այն պատճառով, որ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունն իբր չի կարող լուծել կամ հաղթահարել մարդկությանն սպառնացող վտանգը, այլ այն պատճառով, որ կապիտալիստական արտադրաեղանակն ունակ չէ գիտականորեն կառավարելու հասարակության և բնության փոխհարաբերությունները:

Բնության հետ ունեցած իր հարաբերություններում ամեն մի հասարակություն հետապնդում է մեկ հիմնական նպատակ— ապահովել իր գոյության ու զարգացման նյութական պահանջմունքները: Մարդու առաջադրած մյուս պահանջները՝ գիտական, դաստիարակչական, առողջապահական, գեղագիտական և այլն, անմիջականորեն կամ, վերջին հաշվով, բխում են հասարակության նյութական արտադրության պահանջմունքները բավարարելու կարիքներից: Այլ խոսքով՝ նյութական բարիքների արտադրությունն այն հիմքն է, որի վրա խա-



ըլսխվում և զարգանում են ինչպես մարդկանց՝ միմյանց հետ, նույնպես և
բնության նկատմամբ ունեցած բոլոր հարաբերությունները: «Բնության նկատ-
մամբ մարդկանց սահմանափակ հարաբերությունը,— գրել են Մարքսը և Էն-
գելսը,— պայմանավորում է նրանց սահմանափակ հարաբերությունը իրար
նկատմամբ, իսկ իրար նկատմամբ նրանց սահմանափակ հարաբերությունը՝
նրանց սահմանափակ հարաբերությունը բնության նկատմամբ» (Կ. Մարքս և
Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, Ե., 1972, հ. I, էջ 29): Գիտական կոմունիզմի հիմնա-
դիրների այս դրույթից հետևում է, որ մարդկային հարաբերությունների զար-
գացման դիալեկտիկան ոչ մի կերպ չի կարելի բացահայտել հասարակության
և բնության կապից անկախ: Այն հակասությունները, որոնք առկա են կամ
առաջանում են հասարակության ու բնության միջև, վերջին հաշվով, իրենց
որոշակի ազդեցությունն են թողնում նաև մարդկանց հասարակական հարա-
բերությունների զարգացման վրա: Միաժամանակ այն հակասությունները,
որոնք ծագում և սրվում են հասարակության ու բնության միջև, պայմանավոր-
ված են նյութական արտադրության պրոցեսում մարդկանց միջև ծագող հա-
կասություններով: Հետևապես չի կարելի բնության մեջ տեղի ունեցող (հասա-
րակության գործունեությամբ պայմանավորված) փոփոխությունները դիտել
մարդկանց նյութական-արտադրական հարաբերություններից դուրս, որովհե-
տև այդ հարաբերություններից դուրս բնությունը հասարակության համար առ-
հասարակ գոյություն չունի: Սակայն մարդկանց՝ միմյանց և բնության նկատ-
մամբ ունեցած հարաբերությունների բովանդակությունն անմիջականորեն
պայմանավորված է ոչ թե կենսական բարիքների արտադրության սոսկ փաս-
տով, այլ այդ բարիքների արտադրության եղանակով: Այդ առիթով Մարքսը գրել
է. «Նյութական արտադրության որոշակի եղանակից բխում է, առաջին՝ հասա-
րակության որոշակի կառուցվածքը, երկրորդ՝ մարդկանց որոշակի հարաբե-
րությունը բնության նկատմամբ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26,
ч. I, стр. 279):

Խոսելով բնության վրա մարդու ներգործության և դրա հետևանքով հակա-
սությունների ծագման բնույթի մասին՝ մարքսիստներն այդ հարաբերություն-
ների բնույթը և դրանց դրսևորման ձևերը բացատրում են ոչ թե ելնելով տեխ-
նիկայի կամ արտադրության սոսկ պրոցեսի առանձնահատկություններից, ինչ-
պես վարվում են տեխնոկրատները, այլ՝ հասարակության զարգացման մեջ
նյութական արտադրաեղանակի որոշիչ դերի օրենքի գործողությունից: Տեխնի-
կան ինքնին չի սրում մարդու և բնության միջև առկա հակասությունները:
Ճիշտ է, բնությունը մարդու կողմից վերափոխվում է միշտ մի որոշակի տեխ-
նիկական համակարգի միջոցով և, հետևաբար, մարդու և բնության միջև ծա-
գող հակասությունների ծավալման կարևոր և անմիջական օղակներից է, սա-
կայն դրա պլանաչափ ու խելամիտ օգտագործումը, որը հնարավոր է սոցիա-
լիզմի և առավելագույնս՝ կոմունիզմի պայմաններում, չի կարող դառնալ էկոլո-
գիական հակասությունների սրման պատճառ: «Մեքենաների կապիտալիստա-
կան կիրառումից անբաժան հակասություններ ու անտագոնիզմներ գոյություն
չունեն,— գրել է Մարքսը,— որովհետև նրանք առաջ են գալիս ո՛չ թե բուն մե-
քենաներից, այլ դրանց կապիտալիստական կիրառումից» (Կ. Մարքս, Կապի-
տալ հ. I, էջ 463): որպեսզի տեխնիկան չարի հասարակության ու բնության
փոխհարաբերությունները, ամենից առաջ անհրաժեշտ է, որ այն գտնվի հասա-
րակական ու քաղաքական մի այնպիսի կազմակերպության ձեռքում, որն ունակ
լինի տեխնիկայի կիրառման գիտական ու ռացիոնալ սկզբունքներն իրականաց-
նելու ողջ հասարակության շահերին համապատասխան: Կապիտալիզմի պայ-
մաններում, օրինակ, այդ սկզբունքները հնարավոր չէ իրականացնել այն պատ-
ճառով, որ այդ հասարակարգում (պայմանավորված հողի և արտադրության
մյուս միջոցների մասնավոր սեփականության գոյությամբ) առկա են սոցիալ-
քաղաքական հակադիր շահեր հետապնդող դասակարգեր: Այստեղ չկա արմա-
տական շահերի ու նպատակների միասնություն: Նման պայմաններում, բնա-
կանաբար, հնարավոր չէ տեխնիկան կիրառել այնպես, որ այն ի սպաս դրվի



digitised by A.R.A.R.@

*շարունակվել։ «Զրո-աճի», կամ դրա նորագույն արտահայտություն հանդիսացող «օրգանական զարգացման» կոնցեպցիայի միակողմանիությունն արտահայտվում է նրանով, որ դրանում անտեսվում են մարդկային հարաբերությունների, հատկապես արտադրահարաբերությունների և գիտատեխնիկական առաջընթացի զարգացման դերն ու նշանակությունը էկոլոգիական հակասությունների հաղթահարման գործում։ Հետևապես, դրանք չեն կարող դառնալ իրականության գիտական վերափոխման մեթոդներ։*

*Որքան էլ կապիտալիզմը զարգանա, միևնույնն է, մասնավոր սեփականության վրա հիմնված ոչ մի հասարակարգ ունակ չէ իր հարաբերությունները բնության հետ այնպես զարգացնել, որ վերջինս կոնֆլիկտի մեջ չմտնի հասարակության հետ։ Մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգը ո՛չ միայն չի կարող ապահովել հասարակության և բնության ներդաշնակ զարգացումը, այլև ուղղված է այդ ներդաշնակության դեմ։*

*Այս առնչությամբ չի կարելի չհիշել Կ. Մարքսի այն խոսքերը, որ սոցիալիզմի հաղթանակը պարզապես բխում է մարդկության ինքնապահպանման անհրաժեշտությունից։ «Միայն այն բանից հետո,— գրում է Մարքսը,— երբ սոցիալական մեծ հեղափոխությունը կտիրանա բուրժուական դարաշրջանի նվաճումներին, համաշխարհային շուկային ու արդի արտադրաուժերին և դրանք կենթարկի ամենաառաջադեմ ժողովուրդների ընդհանուր վերահսկողությանը,— միայն այդ ժամանակ մարդկային պրոգրեսը կդադարի այն զզվելի հեթանոսական կուռքին նմանվելուց, որը չէր ցանկանում նեկտարն այլ կերպ ըմպել, քան սպանվածների գանգերից» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, *Ե., 1972, հ. I, էջ 683)։ Հիրավի, բնությունը մարդու համար պահպանելու միակ ելքն ու միջոցն առաջադեմ մարդկությունն իրավամբ կապում է կապիտալիզմի կործանման և ամբողջ աշխարհում կոմունիստական հասարակարգի հաղթանակի հետ։ Այն հասարակարգը, որն ընդունակ չէ լուծելու իր զարգացումն արգելակող սոցիալական հակասությունները, անկարող է վերացնելու նաև արտադրության անցանկալի հետևանքները։*

*Այսպիսով, բնության նկատմամբ հասարակության ներգործության բնույթը հիմնականում պայմանավորված է իրենց իսկ՝ մարդկանց սոցիալ-տնտեսական հարաբերությունների բնույթով։ Հարաբերություններ, որոնք թեև վերջին հաշվով պայմանավորված են բուն նյութական արտադրությամբ, բայց միաժամանակ, միջնորդավորում և, որոշ իմաստով, բնութագրում են բնության նկատմամբ մարդկանց հարաբերությունները։ «Արտադրելու համար,— գրել է Մարքսը,— մարդիկ մտնում են որոշ կապերի ու հարաբերությունների մեջ և միայն այդ հասարակական կապերի ու հարաբերությունների շրջանակներում գոյություն ունի նրանց ներգործությունը բնության վրա...» (Նույն տեղում, էջ 210)։*

*Մարքսի այս հիմնադրույթը մեզ հանգեցնում է հետևյալ եզրակացության. ինչպիսի հարաբերություններ հաստատվում են մարդկանց միջև նյութական արտադրության պրոցեսում և դրա հիման վրա, նույնպիսի հարաբերություններ ծագում, զարգանում և հաստատվում են նաև բնության նկատմամբ։ Մարքսի տնտեսական ուսմունքի մեջ հենց այն հիմնական գաղափարն է զարգացվում, որ մարդկանց միջև եղած բոլոր տեսակի հարաբերություններում որոշիչ ու վճռական դերը պատկանում է նյութական արտադրահարաբերություններին, որոնք և կանխորոշում են մարդկային մյուս հարաբերությունների, այդ թվում նաև գիտության ու տեխնիկայի կիրառման բնույթը։*

*Կապիտալիզմի արդի փուլում արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև ծավալվող հակասություններն այնպիսի բնույթ են ստացել, որ այլևս անհնար է դրանց համատեղ զարգացումը, առանց սպառնալիքի տակ դնելու մարդկային քաղաքակրթությունը։ Միանգամայն կեղծ է հնչում բուրժուական գաղափարախոսների այն հայտարարությունը, թե իբր ազատ մրցակցության աշխարհում գիտությունն ու տեխնիկան այնպիսի զարգացում են ապրում, որ մոտ ապագայում կարող են դիմագրավել, ապա նաև վերացնել էկոլոգիական հակասությունների կոնֆլիկտային երևույթները, որտեղ էլ դրանք երևան*



*գան։ Սակայն նման լավատեսական հայացքների պրոպագանդումը սոցիալական հիմք չունի։ Եվ, չնայած բուրժուական աշխարհում այժմ մեծ հույսեր են կապում գիտության ու տեխնիկայի էկոլոգիական կողմնորոշման հետ, այդուհանդերձ տեղին է նշել, որ գիտության ու տեխնիկայի առաջընթացը դեռևս չի նշանակում, թե այն միշտ և ամենուրեք ծառայում է հասարակական պահանջմունքների բավարարմանը։ Գիտության սոցիալական ֆունկցիան միշտ և ամենուրեք թելադրվել է պետության շահերով, իսկ անտագոնիստական հասարակարգի պայմաններում պետության շահերը միշտ նույնացվել են իշխող դասակարգի շահերին։ Հետևաբար, գիտությունն այդ առումով ինքնուրույն չէ. դրա դերն ու նշանակությունը սահմանափակվում են լոկ այն ոլորտով, որի շրջանակներում թույլատրվում է դրա կիրառումը կառավարող դասակարգի կամ, որ միևնույնն է, պետության կողմից։ Ինչպես արտադրությունը, նույնպես և գիտությունն ու տեխնիկան ինքնին չեն կարող դառնալ ինչպես սոցիալական չարիքների, նույնպես և բնության մեջ անցանկալի երևույթների առաջացման պատճառ։*

*Վերացնելով սոցիալական հակամարտ հակասությունների առաջացման ու սրման արմատները, սոցիալիզմն ստեղծում է սեփականության այնպիսի նոր ձև, որի պայմաններում հնարավոր է դառնում վերացնել «բոլոր այն կործանարար հետևանքները, որոնք կապված են խոշոր արդյունաբերությունը վարելու այժմյան (կապիտալիստական—Լ. Գ.) սիստեմի հետ» (Ֆ. Էնգելս,* Կոմունիզմի սկզբունքները, *Ե., 1959, էջ 31)։ Երբ բնության հարստությունները և արտադրամիջոցները դադարում են առանձին դասակարգի մենաշնորհը լինելուց և դրվում են հասարակության բոլոր անդամների տնօրինության տակ և, հետևաբար, աշխատանքի մարդը տնօրինում է իր աշխատանքի պտուղները, ապա հասարակությունն այդպիսի պայմաններում օբյեկտիվորեն ընդունակ է դառնում իր հարաբերությունները բնության հետ կազմակերպել այնպես, որ վերջինս միշտ ծառայի իր պահանջներին։ «Բնությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— կարելի է օգտագործել տարբեր կերպ։ Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտե, իր ետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ։ Բայց կարելի է և պետք է... վեհացնել բնությունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը։ ...Եվ բնությունը մեզ հարյուրապատիկ կփոխհատուցի» (*ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 79)։*

*Միայն սոցիալիստական հասարակարգն է, որ բնության հետ ունեցած իր հարաբերություններում մշտապես ելնում է ոչ թե բնության արժեքների գիշատչական օգտագործման, այլ նրա կոմունիստական սպառման սկզբունքներից, ոչ թե բնության կենսունակության կործանման, այլ այդ կենսունակության պահպանման ու զարգացման սկզբունքներից։ Միայն այդ դեպքում «...մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բնության միջոցների, շահագործման միջոցների չեն վերածվի» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 26, էջ 590)։*

---

digitised by A.R.A.R.@

## Կուսակցական շինարարության տեսություն և պրակտիկա

# ՍՄԿԿ ՇԱՐՔԵՐԸ ՀԱՄԱԼՐԵՆՔ ԱՐԺԱՆԱՎՈՐՆԵՐՈՎ

**Դ. Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար

ԿԱՄՈՅԻ ՇՐՋԱՆՈՒՄ լավ են ճանաչում սարքաշինական
գործարանի բանվորուհի Վարդիթեր Հարությունյանին։
Սոցմրցության առաջավոր է, ակտիվորեն է մասնակցում հասարակական աշ-
խատանքներին. ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ է, Կամոյի քաղաքային սովետի
դեպուտատ, բարեխղճորեն է կատարում կոմերիտական հանձնարարու-
թյուններն ու դեպուտատի պարտականությունները։ Ընտրվել էր նաև ՀամԼԿԵՄ
XVIII համագումարի պատգամավոր։ «Երազում եմ անդամագրվել կոմունիս-
տական կուսակցությանը, որպեսզի ավելի լավ պայքարեմ կոմունիզմի վեհ
գործի համար,— վերադառնալով կոմերիտմիության համագումարից՝ գրել էր
Վ. Հարությունյանը սկզբնական կուսկազմակերպությանն ուղղած իր դիմու-
մում։ Եվ ահա նրա երազանքն իրականացավ։ Շրջկոմի բյուրոյի անդամները
ճանաչում էին առաջավոր բանվորուհուն, գիտեին, որ նա լավ է ուսումնասիրել
կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, պարզորոշ պատկերացնում է
կուսակցության ու երկրի քաղաքական նպատակները, կատարելապես տիրա-
պետում է իր մասնագիտությանը։ «Ահա թե ինչպիսին պետք է լինի իսկական
կոմունիստը»— ասացին նրանք և միաձայն հաստատեցին գործարանի կուս-
կազմակերպության որոշումը՝ Վ. Հարությունյանին ՍՄԿԿ շարքերը որպես ան-
դամության թեկնածու ընդունելու մասին։

Ինչպես ողջ կուսակցությունը, այնպես էլ մեր շրջանի կուսկազմակերպու-
թյունը շարունակում է համալրվել բանվորների, գյուղի աշխատավորների,
մտավորականության լավագույն ներկայացուցիչների հաշվին։

Հետևելով լենինյան կուրսին՝ Սովետական Միության կոմունիստական կու-
սակցությունն արժանավայել ձևով է կատարում բանվոր դասակարգի, բոլոր
աշխատավորների, ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդի իր դերը։ Նա
բարձր է պահում մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզ-
մի հեղափոխական դրոշը, անդուլ պայքարում կոմունիստական գաղափարա-
խոսության հաղթանակի համար, հետևողականորեն կենսագործում կուսակցա-
կան կյանքի լենինյան նորմերը և կուսակցական ղեկավարման սկզբունքները,
է՛լ ավելի է ամրապնդում իր շարքերի գաղափարական ու կազմակերպական
միասնությունը, ապահովում նրա անաղարտությունը։ Սովետական ժողովուրդը
խորապես ընկալում է կուսակցության քաղաքականությունը և ամբողջ սրտով
պաշտպանում այն։ Դրա վառ արտահայտությունը աշխատավորների ձգտումն
է՝ իրենց կյանքը անխզելիորեն կապելու ՍՄԿԿ-ի հետ։

Կուսակցության ամրապնդումը, նրա որակական կազմի բարելավումը ներ-
կուսակցական կյանքի արմատական հարցերից են։ Կուսակցության ստեղծման



հենց առաջին օրերից Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն տվեց նրա շարքերի
ամրապնդմանը, որակական աճին, կուսկազմակերպությունների մարտունա-
կության բարձրացմանը, շեշտեց կուսակցության անդամի կոչումն ու հեղինա-
կությունը բարձր պահելու կարևորությունը։ Մեր կուսակցությունը, նրա Կենտ-
րոնական կոմիտեն, ղեկավարվելով լենինյան այդ սկզբունքով, հսկայական
ուշադրություն են նվիրում ՍՄԿԿ շարքերի համալրման և երիտասարդ կոմու-
նիստների դաստիարակության գործին։ «Եվ որքան առաջ ենք շարժվում,—
նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— որքան ավելի խոշոր խըն-
դիրներ է լուծում կուսակցությունը, այնքան ավելի շատ պետք է հոգ տանենք
նրա շարքերը համալրելու թարմ ուժերով, այն մարդկանց հաշվին, ովքեր ար-
ժանացել են սկզբնական կուսակցական կազմակերպության, ամբողջ կոլեկտի-
վի ճանաչմանը, ովքեր իրենց ակտիվորեն են դրսևորում արտադրության մեջ և
հասարակական կյանքում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 95)։ Այդ
խնդրի իրականացման ճանապարհին կարևոր ուղենիշ հանդիսացավ «Կուսակ-
ցության շարքերի ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաս-
տիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության
աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որտեղ հույժ կարևորվեց
ՍՄԿԿ շարքերի համալրման գործում կուսակցական կազմակերպությունների
պատասխանատվության բարձրացման, ՍՄԿԿ շարքերն ընդունվողների նկատ-
մամբ անհատական մոտեցման և հոգատար վերաբերմունքի անհրաժեշտու-
թյունը։

Շրջանի կուսկազմակերպությունների համար խիստ կարևոր էր նաև ՀԿԿ
Կենտկոմի 1977 թ. ապրիլյան պլենումի՝ «ՍՄԿԿ XXV համագումարի պահանջ-
ների լույսի ներքո կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության
թեկնածուների դաստիարակության ասպարեզում հանրապետության կուսակ-
ցական կազմակերպությունների աշխատանքի մասին» որոշումը։ Ղեկավարվե-
լով ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության, կուսակցության XXV համագումարի
պահանջներով և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշում-
ներով՝ կուսշրջկոմը սկզբնական կազմակերպությունների ուշադրությունը սև-
եռում է այն բանի վրա, որպեսզի կուսակցության շարքերը համալրվեն ար-
ժանավոր մարդկանցով, քաղաքի ու գյուղի բանվորների, ինժեներատեխնիկա-
կան աշխատողների, գյուղատնտեսական մասնագետների և մտավորականու-
թյան լավագույն ներկայացուցիչների ընտրությունը կատարվի մտածված,
ամենօրյա կազմակերպական և գաղափարադաստիարակչական աշխատանքի
հիման վրա։

ՍՄԿԿ շարքերի համալրման ընթացքում կուսշրջկոմը հաշվի է առնում շըր-
ջանի ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրներն ու հեռանկարները,
տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն տեղամասերում
կուսկազմակերպությունների դերի ու հեղինակության բարձրացման, նրանց
մարտունակության աճի անհրաժեշտությունը։

Վերջին երկու տասնամյակում լուրջ տեղաշարժեր են կատարվել շրջանի
էկոնոմիկայում. կոլտնտեսությունները վերածվել են պետական տնտեսություն-
ների, բուռն թափով զարգացել է արդյունաբերությունը, կառուցվել ու գոր-
ծարկվել են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, ընդարձակվել ու հզորացել են
հները։ Արտադրական մասնաճյուղեր են բացվել Նորադուզ, Սարուխան, Ծովա-
զարդ, Լանջաղբյուր, Լճափ, Այրիվանք և այլ գյուղերում։ Այժմ շրջանն ունի
մեքենաշինական, շինանյութերի, թեթև ու սննդի արդյունաբերության իր ձեռ-
նարկությունները։ «Կամոկաբել», սարքաշինական, «Սևան» հանքային ջրերի
գործարանները, գորգագործական ֆաբրիկան իրենց արտադրատեսակներով
լայն ճանաչման են արժանացել հանրապետության սահմաններից դուրս։

Արդյունաբերության զարգացման շնորհիվ էական փոփոխություններ են
կատարվել բնակչության սոցիալական կազմում. ամենուրեք ստեղծվել են բան-
վորական խոշոր կոլեկտիվներ, երևան են եկել բազմաթիվ նոր մասնագիտու-
թյուններ, ձևավորվել է տեխնիկական մտավորականությունը։ Եթե 1965 թվա-
կանին արդյունաբերության մեջ ընդգրկված էր 1.400 մարդ, ապա այժմ՝ վեց



digitised by A.R.A.R.@

անգամ ավելի։ Ինժեներատեխնիկական աշխատողների թիվն անցնում է 600 մարդուց։

Էկոնոմիկայի և բնակչության սոցիալական կազմի դրական փոփոխությունները բարերար ազդեցություն են թողել շրջանի կուսկազմակերպության որակական կազմի վրա։ Արդյունաբերական ձեռնարկությունների առաջավոր բանվորները, առաջատար մասնագետները, որոնք աչքի են ընկել քաղաքական ու գործնական լավագույն հատկանիշներով, համալրել են շրջանի կուսկազմակերպության շարքերը։ Միայն վերջին մեկ տասնամյակում, ի հաշիվ գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվների, կուսակցության շարքերն է ընդունվել 300 մարդ, որոնք կազմում են շրջանի կոմունիստների ընդհանուր թվի մոտ 11 տոկոսը։

Մենք առանձնակի ուշադրություն ենք նվիրում անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում աշխատող արտադրության առաջավորների, մասնագետների, կոմերիտականների հաշվին կուսակցության շարքերի համալրմանը, ՍՄԿԿ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների դաստիարակության բարելավմանը։

Կուսակցության XXV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը, բնութագրելով կուսակցության աճը, նրա որակական կազմի բարելավման խնդիրները, նշեց. «Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցություն, սա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը։ Իր էությամբ ՍՄԿԿ-ն եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը» (նույն տեղը, էջ 93)։ Այս հանգամանքը մենք միշտ հաշվի ենք առնում։

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները ՍՄԿԿ շարքերի ընդունելության ժամանակ ղեկավարվում են անհատական ընտրության սկզբունքով, որպես կանոն բազմակողմանիորեն ուսումնասիրում են յուրաքանչյուր դիմողի գործունեությունը, նրան գնահատում ոչ թե իր խոսքերով, այլ կոնկրետ գործերով, արտադրության մեջ և հասարակական կյանքում նրա ունեցած տեղով ու դերով, կուսակցության որոշումների կատարման գործում, կոլեկտիվի ընդհանուր պայքարում նրա անձնական ներդրումով։ Նման մոտեցման շնորհիվ հիմնականում կուսակցության շարքերն են ընդունվում քաղաքականապես հասուն, գրագետ, իրենց գործը տիրապետող բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու գյուղատնտեսության մասնագետներ, մտավորականության լավագույն ներկայացուցիչներ, ովքեր արժանացել են սկզբնական կուսկազմակերպության ողջ կոլեկտիվի ճանաչմանը, իրենց ակտիվորեն են դրսևորել արտադրության մեջ և հասարակական կյանքում, օժտված են գործնական, քաղաքական և բարոյական բարձր հատկանիշներով։

Տեղին է զգուշացրել Վ. Ի. Լենինը, որ ավելի լավ է տասն աշխատողներ իրենց չանվանեն կուսակցության անդամներ, քան թե մի շաղակրատ իրավունք ու հնարավորություն ունենա լինելու կուսակցության անդամ։ Այս խոսքերը մեզ համար գործողության ուղեցույց են, որի անշեղ կատարման գործում վճռական դեր ունեն ոչ միայն կուսկազմակերպությունները, այլև երաշխավորողները։ Եվ, իրոք, այդպես է մեզ մոտ. ՍՄԿԿ շարքերի որակական աճի համար մեծ պատասխանատվություն են կրում նաև երաշխավորողները։ Նրանք հոգ են տանում երաշխավորվածների գործնական, գաղափարական ու բարոյական հատկանիշների ձևավորման ու զարգացման մասին։

Կուսակցության շարքերի համալրման ժամանակ շրջկոմը նկատի է ունենում ոչ միայն ընդհանրապես կուսակցության մեջ ընդունվողների որակական կողմը, հասարակական-քաղաքական ակտիվության մակարդակը, այլև սոցիալական հատկանիշը։ Այսպես, եթե 1971 թ. շրջանի ընդամենը 17 սկզբնական կուսկազմակերպություններում ընդունված 31 ՍՄԿԿ անդամ-թեկնածուներից բանվորներ էին 17-ը, ծառայողներ՝ 12-ը, կանայք՝ 8-ը, կոմերիտականներ՝ 18-ը, ապա 1978 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունված 88 թեկնածուներից 64-ը բանվորներ են, 18-ը՝ ինժեներատեխնիկական աշխատողներ, 58-ը՝ կոմերիտականներ, 33-ը՝ կանայք։ ՍՄԿԿ շարքերի համալրման, կուսակցական կազ-



մակերպությունների երիտասարդացման գործը լավ հիմքերի վրա են դրված կաբելի, սարքաշինական գործարանների, Նորագյուղի, Կարմիրի սովխոզների, կարի ֆաբրիկայի, գազի շահագործման միջշրջանային վարչության, արտադրատեխնիկական միավորման, գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման շրջանային միավորման սկզբնական կուսկազմակերպություններում։

Սիստեմատիկ համալրման շնորհիվ Նորագյուղի, Սարուխանի, Հացառատի, Բատիկյանի սովխոզների կուսկազմակերպությունները տարեցտարի աճում ու ամրապնդվում են։ Նրանց շարքերում այժմ հաշվվում են 80—100 կոմունիստներ։ Նորագյուղի կուսկազմակերպությունը, օրինակ, վերջին երեք տարում ՍՄԿԿ շարքերն է ընդունել 9 մարդ, որոնք բոլորն էլ արտադրության առաջավորներ են և ունեն քաղաքական ու գաղափարական անհրաժեշտ պատրաստականություն։ Հովիվներ Ա. Հարությունյանը, Շ. Հակոբյանը, կթվորուհի Փ. Սիմոնյանը, մեխանիզատորներ Ն. Գրիգորյանը, Մ. Խաչատրյանը, ինժեներ Ն. Ստեփանյանը և մյուսները կոմունիստին վայել ձևով են դրսևորում իրենց, աշխատանքում օրինակ են հանդիսանում մյուսների համար։ Ա. Հարությունյանը խնամում է 600 գլուխ ոչխար, կատարում ու գերակատարում մթերատվության առաջադրանքները։ Նա համատեղում է արտադրությունն ու կրթությունը. հեռակա կարգով սովորում է Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտում։

Պակաս կարևոր չէ երիտասարդ կոմունիստների, ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքը։ Այդ գործը լավ է կազմակերպված մասնավորապես արտադրատեխնիկական միավորման կուսկազմակերպությունում։ Այստեղ պրակտիկա է դարձել կուսժողովներում ու բյուրոների նիստերում լսել ու քննարկել թեկնածուների, երիտասարդ կոմունիստների ինֆորմացիաները, հաշվետվությունները։ Կազմակերպությանը, նրա բյուրոյին հետաքրքրում է, թե ինչպես են նրանք կատարում կուսակցական հանձնարարությունները, ապահովում իրենց ավանգարդային դերն աշխատանքում, ինչ են անում իրենց քաղաքական մտահորիզոնը բարձրացնելու համար։ Այստեղ ՍՄԿԿ շարքերը համալրած երիտասարդների ճնշող մեծամասնությունն արտադրության առաջավոր է, հասարակական-քաղաքական ակտիվ աշխատող։ Երիտասարդ կոմունիստներ Ս. Բոշյանը ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է, Ս. Պետրոսյանը արժանացել է Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի, Մ. Նիկողոսյանը և Յու. Դադոյանը՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի։ Երիտասարդ կոմունիստներից շատերն այսօր արդեն ղեկավարում են արտադրությունը։ Բանվորից Ռ. Ղլիջյանը հասել է արտադրամասի գլխավոր տեխնոլոգի պաշտոնի, Է. Ղազանչյանը՝ մեխանիզացիայի և ավտոմատիզացիայի բյուրոյի պետի, Լ. Փոքրիկյանը՝ գլխավոր կոնստրուկտորի, Ա. Խաչատրյանը՝ արտադրամասի պետի տեղակալի պաշտոնի։

Շրջանային կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում երիտասարդ կոմունիստների առաջքաշման և նրանց պատասխանատու աշխատանք վստահելու գործին։ Վերջին երկու տարիներին շրջկոմի ապարատում, շրջանային ու քաղաքային սովետների գործադիր կոմիտեներում, տարբեր ձեռնարկություններում, դպրոցներում, տնտեսություններում ղեկավար աշխատանքի են անցել շատ երիտասարդ կոմունիստներ, որոնք լավագույն ձևով են կազմակերպում արտադրությունը, իրենց օրինակով ոգևորում գործընկերներին, նպաստում շրջանի առջև դրված խնդիրների լուծմանը։

Կուսակցության շարքերի համալրման գործում վճռական նշանակություն ունի ՍՄԿԿ անդամության թեկնածուների, երիտասարդ կոմունիստների հետ տարվող դաստիարակչական աշխատանքը։ Շրջկոմը և սկզբնական կազմակերպություններն անչափ կարևորում են այդ գործոնը և մշտապես զբաղվում նրանց գաղափարական դաստիարակությամբ, նկատի ունենալով, որ հենց թեկնածուական ժամանակաշրջանում կոմունիստը պետք է քաղաքականապես կոփվի, սովորի հարգել կուսակցության ավանդույթները, բարեխղճորեն կատարի կանոնադրական պարտականությունները։ Այս նպատակներին է ծառա-



digitised by A.R.A.R.@

յում շրջկոմին առընթեր գործող երիտասարդ կոմունիստների դպրոցը, որտեղ ընդգրկված են շուրջ 230 կուսանդամության թեկնածուներ և մինչև երեք տարվա ստաժ ունեցող երիտասարդ կոմունիստներ։ Դպրոցի ունկնդիրներն ավելի խորությամբ են ուսումնասիրում կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, նրա կազմակերպական կառուցվածքը, կուսակցական կյանքի նորմերը, ղեկավարման սկզբունքները, բարձրացնում իրենց գաղափարաքաղաքական մակարդակը։ Նման դպրոց է ստեղծված նաև արտադրական միավորումում, որտեղ հաճախակի կազմակերպվում են երիտասարդ կոմունիստների հանդիպումներ աշխատանքի վետերանների, հին բոլշևիկների, Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների, համընդհանուր հեղինակություն վայելող վարպետ-դաստիարակների հետ։ Այդ հանդիպումները մեծապես նպաստում են երիտասարդների աշխատանքային և հայրենասիրական դաստիարակությանը, նրանց տոգորում հայրերի՝ կոմունիզմի գործին նվիրվածության լավագույն ավանդույթներով։

Կոմերիտմիությունը եղել ու մնում է կուսակցության հավատարիմ օգնականն ու հուսալի ռեզերվը։ Ընկ. Լ. Ի. Բրեժնևը, ՀամԼԿԵՄ XVIII համագումարում խոսելով երիտասարդության խնդիրների մասին, ասաց. «Ընդհանուր առմամբ ավագ սերնդի կոմունիստները, ըստ իս, կարող են գոհ լինել մեր օրերի սովետական երիտասարդությունից։ Նա աճում է որպես կոմունիստականորեն համոզված, կուսակցության գործին, մեծ Լենինի գործին խորապես նվիրված երիտասարդություն»։ Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններն ամենօրյա օգնություն են ցույց տալիս երիտասարդության ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը, կոմերիտմիության մեջ կուսակցական կորիզի ամրապնդմանը։ Ներկայումս շրջանի 365 երիտասարդ կոմունիստներ կատարում են կոմերիտական-հասարակական հանձնարարություններ։ Կոմերիտական սկզբնական կազմակերպությունների 69 քարտուղարներից 31-ը ՍՄԿԿ անդամներ և անդամության թեկնածուներ են, նրանց 94 տոկոսն ընտրվել է սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների կազմում։

ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործում ՀԿԿ շրջկոմին մեծ օգնություն է ցույց տալիս կուսակցական հանձնաժողովը, որը սիստեմատիկաբար գումարում է նիստեր, որտեղ ուսումնասիրվում են ընդունելության գործերը, համապատասխան փաստաթղթերի առկայությունը, դիմումների քննարկման կարգի պահպանման ճշտությունը և ներկայացվում քարտուղարությանը կամ բյուրոյին՝ համապատասխան ընթացք տալու համար։ Հանձնաժողովի կազմում ընտրված են կուսակցական աշխատանքի և կյանքի հարուստ փորձ ունեցող կոմունիստներ, որոնց հատուկ են բարձր սկզբունքայնությունը և ուշադրությունը մարդկանց նկատմամբ։

Վերջին տարիներին շրջանի աշխատավորական կոլեկտիվներն էական հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառներում։ Շրջանը մի քանի անգամ արժանացել է ՀԿԿ Կենտկոմի, Հանրապետության Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշների և պարգևների։ Այդ գործում մեծ ավանդ ունեն շրջանի կոմունիստները, որոնց 71 տոկոսը զբաղված է անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում։

Դրական աշխատանքն, իհարկե, մեզ գոհացնում է, սակայն չպետք է աչքաթող անենք նաև այն բանի առջև, որ շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքում դեռևս կան թերություններ ու վրիպումներ։ Լանջաղբյուրի, Ծովազարդի, Լճափի սովխոզների, կոշիկի, կահույքի ֆաբրիկաների, ավտոնորոգման գործարանի սկզբնական կուսկազմակերպություններն անբավարար են զբաղվում ՍՄԿԿ շարքերը երիտասարդ կադրերով համալրելու հարցերով։ Այս կազմակերպություններում բացատրական, նպատակային անհրաժեշտ աշխատանք չեն տանում երիտասարդության շրջանում, թույլ է հսկողությունն ու օգնությունը կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ։ Վերջերս շրջկոմի բյուրոն քննարկեց «ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երի-



տասարդ կոմունիստների հետ կատարվող աշխատանքի վիճակը Կամոյի սով-
խոզ-տեխնիկումի կուսակցական կազմակերպությունում» հարցը։ Պարզ-
վեց, որ սովխոզային արտադրության մեջ աշխատող մեծ թվով երիտասարդ-
ներ օժտված են քաղաքական ու գործնական լավ հատկանիշներով և ցանկանում
են ընդունվել ՍՄԿԿ շարքերը։ Սակայն 1970—1977 թվականներին արտադրա-
մասային չորս կազմակերպություն առհասարակ իրենց շարքերը չեն համա-
լրել։ Այստեղ հաշվառման մեջ գտնվող 76 կոմունիստներից 40-ը 50 տարեկա-
նից բարձր են։ Շրջկոմի բյուրոն խստորեն պահանջեց կուսկոմիտեից (քարտու-
ղար՝ Ռ. Հովեյան)՝ կարճ ժամանակում վերացնել ՍՄԿԿ շարքերի ընդունելու-
թյան գործում տեղ գտած թերությունները։

Շրջանի մի քանի կուսկազմակերպություններ պատշաճ խորությամբ չեն
անդրադառնում կուսակցական շինարարության այդ կարևոր բնագավառին։
Մինչև վերջերս գյուղատնտեսական ձեռնարկություններում բավական փոքր էր
կոմունիստ մասնագետների, անասնապահների, մեխանիզատորների թիվը։
Առանձին կուսկազմակերպություններ աչքաթող են անում երիտասարդ կոմու-
նիստների դաստիարակության, նրանց կողմից ՍՄԿԿ կանոնադրական պար-
տականությունների կատարման, արտադրությունում նրանց ուժերի տեղա-
բաշխման, հասարակական աշխատանքում ընդգրկման հարցերը։ Հետևանքը
լինում է այն, որ նրանք կտրվում են կուսակցական կյանքից, մատնվում պասսիվության, մի բան, որ անհարիր է կոմունիստի կոչմանը։ Այդպիսի փաստեր
են արձանագրվել Լանջաղբյուրի, Սարուխանի սովխոզների, Գեղարքունիքի տե-

րիտորիալ և քաղաքի կուսկազմակերպություններում։
Նկատի ունենալով ՍՄԿԿ շարքերի համալրման և երիտասարդ կոմունիստ-
ների հետ տարվող աշխատանքում տեղ գտած վրիպումները, շրջանային կոմի-
տեն մշակել է մի շարք միջոցառումներ և հանձնարարել բոլոր սկզբնական
կուսկազմակերպություններին՝ մշտապես և հետևողականորեն զբաղվել կուս-
թեկնածուների ու երիտասարդ կոմունիստների քաղաքական մտահորիզոնի
ընդլայնմամբ, նրանց գործնական-կազմակերպչական հատկանիշների ձևա-
վորմամբ, հասնել այն բանին, որ ամենուրեք թեկնածուական ժամանակաշրջա-
նը դառնա իսկական բնաշրջան ապագա կոմունիստի համար, յուրաքանչյուր
կոմունիստ միշտ և ամենուրեք բարձր պահի լենինյան կուսակցության անդամի
վեհ կոչումը։

---

digitised by A.R.A.R.@

# ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ ԳՈՐԾՈՒՄ Է

**Ս. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
ՀԿԿ Ղափանի շրջկոմին առընթեր կուսհանձնաժողովի նախագահ

ՎԵՐՋԵՐՍ ՄԵՐ ԿՈՒՍՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ անունով ստացվեց մի նամակ։ Գրել էին Ղափանի արդյունաբերական ձեռնարկություններից մեկի մի խումբ բանվորներ։ Նրանք հայտնում էին, թե Ա. Պ.-ն, որ դիմել է սկզբնական կուսկազմակերպությանը ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվելու համար, անձնական հատկանիշներով արժանի չէ այդ բարձր վստահությանը։ Նամակի հեղինակները խնդրում էին ստուգել իրենց վկայակոչած փաստերը։

Ստուգումը հնարավորություն ընձեռեց սկզբնական կուսկազմակերպությանը՝ ավելի մոտիկից ճանաչելու այդ ընկերոջը և չսխալվելու կուսակցության մեջ նրա ընդունելության գործում...

1977 թ. կուսհանձնաժողով եկան երկու շինարար բանվորներ և բողոքեցին, որ «Քաջարանշին» տրեստի արհմիության կոմիտեում խախտվում է սանատորական ուղեգրերի բաշխման կարգը։ Մինչ այդ նման ահազանգ ստացել էինք լուսավորության աշխատողների Ղափանի արհմիութենական շրջկոմի վերաբերյալ։ Ահազանգերի մասին հայտնեցինք շրջկոմի քարտուղարներին։ Կուսհանձնաժողովին հանձնարարվեց ստուգել շրջանի արհմիութենական կազմակերպություններում սանատորական ուղեգրերի ստացման ու բաշխման վիճակը և արդյունքները ներկայացնել շրջկոմի բյուրոյի քննարկմանը։ Այդպես էլ արվեց։ Կատարած խախտումների համար կուսակցական տույժեր ստացան «Քաջարանշին» տրեստի շինկոմի և լուսավորության աշխատողների արհմիության շրջկոմի ղեկավարները։ Բյուրոն հանձնարարեց արհմիության շրջանային կոմիտեների ղեկավարությանը՝ արմատապես կարգավորել սանատորական ուղեգրերի ստացման ու բաշխման գործը։

Կուսհանձնաժողովները կոչված են օգնելու շրջանային կոմիտեներին՝ կուսշարքերի ընդունելության և կոմունիստների անհատական գործերի ուսումնասիրման ու վիճելի հարցերի կարգավորման գործում, հետևելու, որ ՍՄԿԿ անդամներն անթերի կատարեն կուսակցական կյանքի պահանջները, չխախտեն կուսակցական ու պետական կարգապահությունը։ Նկատի ունենալով այս ամենը՝ շրջկոմը կուսհանձնաժողովը կոմպլեկտավորել է սկզբունքային, գործարար, քաղաքական ու բարոյական բարձր հատկանիշներ ունեցող, շրջանում հեղինակություն վայելող մարդկանցով։ Հանձնաժողովի 15 անդամների մեջ կան շրջկոմի անդամներ ու անդամության թեկնածուներ, կուսկազմակերպության քարտուղարներ, սովետական, արհմիութենական աշխատողներ, տնտեսագետ, ֆինանսիստ, լեռնային գործի, շինարարության, գյուղատնտեսության, առևտրի մասնագետներ, ուսուցիչ ու բժիշկ։ Այնպես որ ՍՄԿԿ անդամ կամ անդամության թեկնածու ընդունվողներից շատերին հանձնաժողովի անդամներից մեկը կամ մի քանիսը ճանաչում են աշխատանքից, ընտանիքից։ Իսկ դա բավականին հեշտացնում է մեր գործը։ Մյուս կողմից՝ հանձնաժողովի այդպիսի կազմի առկայությամբ մենք հազվադեպ ենք դիմում «դրսի» մասնագետների օգնությանը՝ այս կամ այն հարցը նախապատրաստելիս։



Կուսհանձնաժողովը կոմպլեկտավորելիս հաշվի ենք առել նաև նրա անդամների տարիքային կազմը. կրտսերը 33 տարեկան է, ավագը՝ 78։ Կարճ ասած՝ երիտասարդական եռանդն ու կրքոտությունը զուգակցված են համբերատարության ու փորձի հետ։ Իսկ դա փոքր առավելություն չէ։ Ավագ ընկերները քիչ դեպքերում չէ, որ իրենց կյանքի փորձով օգնել են հանձնաժողովի երիտասարդ անդամներին՝ ճիշտ գնահատելու այս կամ այն կոմունիստի արարքը, իսկ երիտասարդները միշտ աչքի են ընկել հարցերի ուսումնասիրությանը ցույց տված իրենց ակտիվ մասնակցությամբ։

Երիտասարդ կոմունիստներից մեկը թողել էր ընտանիքը՝ նոր ամուսնության ակնկալությամբ։ Սկզբնական կուսկազմակերպությունը, ապա կուսկոմիտեն որոշել էին՝ կնոջը, երեխաներին լքելու համար նրան վտարել ՍՄԿԿ շարքերից։ Տաք ու կրքոտ խոսակցություն եղավ կուսհանձնաժողովի նիստում. երիտասարդներն առաջարկում էին հաստատել կուսկոմիտեի որոշումը, իսկ ավագներն ավելի զգույշ էին։ Այդ կոմունիստի հետ ունեցած անկեղծ զրույցից, տված խորհուրդներից հետո որոշվեց գործը շրջկոմի բյուրո տեղափոխել՝ «խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական հաշվառման քարտում» առաջարկությամբ։ Մինչև բյուրոյի նիստը նա վերադարձավ ընտանիք։ Շրջկոմի բյուրոն, հաշվի առնելով նրա կյանքում կատարված փոփոխությունները, չհաստատեց կուսկոմիտեի որոշումն ու կուսհանձնաժողովի առաջարկությունը և նրան արեց խիստ նկատողություն։

Անցել է երեք տարի, երիտասարդ կոմունիստի ընտանիքում վերականգնվել են նախկին ջերմ հարաբերությունները, իսկ ինքը նույնիսկ առաջ է քաշվել պատասխանատու աշխատանքի։

ՍՄԿԿ շարքերի աճի հարցով հիմնականում զբաղվում է կուսշրջկոմի կազմակերպական բաժինը, սակայն կուսհանձնաժողովը կողքից դիտողի դերում չէ։ Ընդհանրապես շրջկոմի բոլոր բաժինների, իսկ առանձնապես կազմակերպական բաժնի ու հանձնաժողովի միջև գոյություն ունի սերտ կապ. կարելի է ասել՝ գործում են համատեղ։ Առանձին դեպքերում հանձնաժողովն ընդունելության գործին ծանոթանում է, երբ այդ առթիվ դիմում է ստացվում սկզբնական կուսկազմակերպությունում, իսկ առհասարակ՝ երբ սկզբնական կուսկազմակերպությունն ընդունելության գործն ուղարկում է շրջկոմ։ Կազմբաժնի հետ միասին հանձնաժողովը հանգամանորեն ծանոթանում է փաստաթղթերին և անհրաժեշտության դեպքում դրանք վերադարձնում, օգնում՝ շտկելու եղած թերություններն ու սխալները։ Ընդունվողների գործերի այս ծանոթությունից էլ սկսվում է հանձնաժողովի նիստի նախապատրաստությունը։ Զրույցի համար թեմաներ հուշում են առանձնապես երաշխավորագրերը, քաղվածքներում բերված կոմունիստների ելույթները, ինքնակենսագրականները։

ՍՄԿԿ շարքերն ընդունվողների համար զրույցները միաժամանակ յուրօրինակ ինֆորմացիաներ են սկզբնական կուսկազմակերպություններում տարվող աշխատանքի մասին։ Դրանք օգնում են իմանալու, թե կոլեկտիվներում աշխատանքային ինչպիսի մթնոլորտ գոյություն ունի, ինչպես է դրված սոցմրցության գործը, ինչքանով են հետաքրքրական ու բովանդակալից անցնում քաղխմբակների ու տեսական սեմինարների պարապմունքները, ինչ ձևով են քննարկվում ընդունելության գործերը և այլն։ «Ներքևից» ստացված այս ինֆորմացիաներին հանձնաժողովը տեղյակ է պահում շրջկոմի համապատասխան բաժիններին, կուսկոմիտեների ու կուսկազմակերպությունների քարտուղարներին, որոնք միջոցներ են ձեռնարկում թերությունները վերացնելու համար։

Ասվածից չպետք է հետևություն անել, թե կուսհանձնաժողովը բավարարվում է միայն ընդունելության գործերի ճիշտ կազմմամբ և ընդունվողների հետ զրույցներ ունենալով, թեև, իհարկե, դա էլ քիչ գործ չէ։ Բավական է ասել, որ անցած երկուսուկես տարում ՍՄԿԿ շարքերը որպես անդամ և անդամության թեկնածու ընդունվածների թիվը հասնում է 711-ի։ Ինչ խոսք, մենք լրիվ վստահում ենք կուսկազմակերպությունների ժողովների որոշումներին, ոչ ոք ընդունվողին այնքան լավ չի կարող ճանաչել, որքան աշխատանքային կոլեկտիվը, բայց հանձնաժողովը, վստահելով հանդերձ, նաև ստուգում է։ Պատահում են,



digitised by A.R.A.R.@

մանավանդ փոքր կազմակերպություններում, երբ ընդունելության հարցում, առանձին դեպքերում, նահանջում են կուսակցական սկզբունքայնության դիրքերից։ Կուսակցական հանձնաժողովի խնդիրն է՝ կանխել այդպիսի երևույթները, պատնեշ դնել անարժան այն մարդկանց առջև, որոնք կցանկանան նման ճանապարհով մուտք գործել ՍՄԿԿ շարքերը։ Այս առնչությամբ նշեմ մեկ օրինակ. հանձնաժողովն ստացել էր Դավիթբեկ ավանի ութնամյա դպրոցի սկզբնական կուսկազմակերպության որոշումը՝ ուսուցիչներից մեկին ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունելու վերաբերյալ։ Կուսհանձնաժողովի անդամ, շրջժողկրթբաժնի մեթոդիստ Ն. Շխալիևը, ծանոթանալով գործին, հայտնեց որ այդ ընկերոջ մասին դպրոցում ու ավանում դրական կարծիք չունեն և զարմանալի է, որ նրան երաշխավորել են դիրեկտորն ու ուսմասվարը։ Եղանք տեղում։ Իրոք, դպրոցի մանկավարժական խորհուրդը քննարկել էր ուսուցչի վարքագծի հարցը և խնդրել շրջժողկրթբաժնին՝ նրան տեղափոխելու այլ դպրոց։ Իսկ ինչո՞ւ այսքանից հետո կուսկազմակերպությունը որոշել է նրան ընդունել ՍՄԿԿ անդամության թեկնածու։ Շրջկոմի բյուրոն, իհարկե, մերժեց կուսկազմակերպության որոշումը և հաստատեց հանձնաժողովի առաջարկությունը, իսկ երաշխավորողներն ու կազմակերպության քարտուղարը ցուցաբերած անսկզբունքայնության ու ոչ-օբյեկտիվության համար ենթարկվեցին կուսակցական տույժի։

Այս և այլ կարգի սխալներից ու թերություններից զերծ մնալու և ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործում սկզբնական կուսկազմակերպությունների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով՝ մենք նման երևույթների մասին ինֆորմացիա ենք տալիս սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին նրանց համար կազմակերպված սեմինարներում ու խորհրդակցություններում, տեղական մամուլի ու ռադիոյի միջոցով ապահովում ենք շրջկոմի բյուրոյի որոշումների հրապարակայնությունը։

Կուսհանձնաժողովը մեծ զգուշություն է ցուցաբերում անհատական գործերի ուսումնասիրման ու կազմման ժամանակ։ Չէ՛ որ դեռևս պատահում են մարդիկ, որոնք հովանավորում են կուսակցական ու պետական կարգապահության խախտողներին, առանձին կուսկազմակերպություններ լիբերալ ու ներողամիտ որոշում են ընդունում նրանց նկատմամբ։ Այստեղից էլ անհատական գործ ուսումնասիրողին ներկայացվող պահանջը՝ օբյեկտիվություն, սկզբունքայնություն, նաև հոգատարություն ու սխալված մարդուն օգնելու պատրաստակամություն։

Ահա այս միտքը հաստատող երկու օրինակ։ Երիտասարդ կոմունիստ Կ. Մարկոսյանն անձնական սեփականության շուրջ ծագած վեճի ժամանակ հասարակական վայրում ծեծում է կենսաթոշակառու բարեկամին՝ նրան պատճառելով մարմնական վնասվածք։ Ղափանի գազի արտադրական վարչության սկզբնական կուսկազմակերպությունը, որտեղ աշխատում էր Կ. Մարկոսյանը, քննարկել էր նրա հարցը և հայտարարել նկատողություն։ Կուսհանձնաժողով հրավիրեցինք Կ. Մարկոսյանին։ Ջանցառուն, իր սխալը ազնվությամբ ընդունելու, իր արարքը դատապարտելու փոխարեն, մեղադրում էր բարեկամին զրպարտության մեջ։ Հարկ եղավ լրացուցիչ ուսումնասիրություն կատարել. Կ. Մարկոսյանի խուլիգանական արարքն ապացուցվեց, շրջկոմի բյուրոն նրան վտարեց ՍՄԿԿ շարքերից։

Միանգամայն այլ բնույթ ունի մյուս օրինակը։ Ղափանի լեռնափրկարար 20-րդ ջոկատի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամ, ջոկատի մարտիկ Ա. Ավետիսյանին, համատեղությամբ աշխատած աշխատավարձից անդամավճար չմուծելու համար, արել էր խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական հաշվառման քարտում։ Ավետիսյանը գրավոր բացատրությամբ խոստովանել էր իր մեղքը և խոստացել մուծել տարբերությունը։ Կարելի էր բավարարվել և գործը տեղափոխել բյուրո։ Բայց հանձնաժողովն այդպես չվարվեց։ Նրա անդամները եղան տեղում։ Պարզվեց, որ կուսկազմակերպության քարտուղար Ս. Մարգարյանը վաղուց գիտեր Ա. Ավետիսյանի համատեղությամբ աշխատելու մասին, նրա գիտությամբ էլ կոմունիստը համատեղությունից ստացած գումարից



անդամավճար չէր մուծում։ Բայց քանի որ Ա. Ավետիսյանը համարձակվել էր կուսակցական ժողովում քննադատել ջոկատի պետին ու կուսկազմակերպության քարտուղարին՝ աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների համար, ապա վերջինս օգտագործել է իրեն հայտնի փաստը և Ա. Ավետիսյանի նկատմամբ ստեղծել անհատական գործ։ Իհարկե, շրջկոմի բյուրոն չմեղմացրեց կուսկազմակերպության որոշումը (ՍՄԿԿ անդամ Ա. Ավետիսյանը խախտել էր կանոնադրական պահանջը), բայց և անտարբերությամբ չանցավ անհատական գործ կազմելու շարժառիթի նկատմամբ. չէ՛ որ դա էլ քննադատության ճնշման յուրատեսակ օրինակ էր։ Կուսկազմակերպության քարտուղար Ս. Մարգարյանն ու ջոկատի հրամանատար Շ. Ջհանգիրյանը ևս ենթարկվեցին կուսակցական տույժի։

Հանձնաժողովը ղեկավարվում է շրջանային կոմիտեի աշխատանքի հեռանկարային պլանով, որտեղ կոնկրետ նշված են, թե ե՞րբ, ո՞ր կազմակերպությունում, շրջկոմի ո՞ր բաժնի հետ ինչ հարց պետք է նախապատրաստել։ Բացի այդ, շրջկոմի քարտուղարների հանձնարարությամբ հանձնաժողովի անդամներն զբաղվում են նաև աշխատավորների նամակների, ահազանգերի ստուգմամբ, մասնակցում պլենումի, ակտիվի ժողովների, խորհրդակցությունների հարցերի նախապատրաստմանը։

Ուսումնասիրելով կամ մասնակցելով որևէ հարցի նախապատրաստությանը, հանձնաժողովի անդամներն անմիջական կապ են ստեղծում կուսկազմակերպությունների հետ, մոտիկից ծանոթանում կոմունիստներին, տեղյակ լինում շրջկոմի բյուրոյի քննարկած հարցերին ու պահանջներին, որ շատ բանով է օգնում մեր հիմնական խնդիրների կատարմանը։ Այս կապակցությամբ կարելի է բերել հետևյալ օրինակը։ 1975—1976 թթ. շրջկոմի բյուրոն, կուսակցական, պետական, ֆինանսական, աշխատանքային կարգապահության խախտումների, պաշտոնական դիրքի չարաշահումների համար, ՍՄԿԿ մի շարք անդամների ու թեկնածուների վտարեց կուսակցության շարքերից, ենթարկեց կուսակցական տույժերի, փոփոխություններ կատարեց առանձին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարության կազմում։

Շրջանային կոմիտեն, սակայն, չբավարարվեց դրանով։ Անհրաժեշտ էր փաստերը վերլուծել, պրոֆիլակտիկ աշխատանքներ ձեռնարկել։ Հրավիրվեց վարչական մարմինների, ժողովրդական դրուժինաների, կարգուկանոնի հենակետերի, ընկերական դատարանների, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն և քննարկվեց սոցիալիստական օրինականության ու համակեցության ամրապնդման նպատակով շրջանում տարվելիք աշխատանքի մասին հարցը, որը նախապատրաստել էր կուսհանձնաժողովը։

Վերջին երկուսուկես տարում հանձնաժողովը շրջկոմի բյուրոյի քննարկմանն է ներկայացրել 21 հարց։ Դրանք իրենց բնույթով բազմազան են և վերաբերում են շրջանի կյանքի տարբեր բնագավառներին։ Քննարկվելիք հարցերի ուսումնասիրությանն ու նախապատրաստմանը ակտիվորեն են մասնակցել կուսհանձնաժողովի անդամներ, շրջսովետի դեպուտատ, ֆինբաժնի վարիչ Կ. Թորոսյանը, կահույքի ֆաբրիկայի տնտեսագետ, կուսկազմակերպության քարտուղար Թ. Սարգսյանը, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի Վ. Ի. Լենինի անվան հանքի նորմավորող Շ. Հարությունյանը, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Ի. Մարտիրոսյանը, անհատական կենսաթոշակառու Ա. Հայրապետյանը և ուրիշներ։

Անտարակույս, կուսհանձնաժողովի (և ոչ միայն նրա) գործն զգալիորեն հեշտանում է, երբ սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ շարքերի ընդունելության և կոմունիստների անհատական գործերի կազմման ու քննարկման ընթացքում ապահովվում են ՍՄԿԿ կանոնադրության, կուսակցական կյանքի տարբեր բնագավառների վերաբերյալ եղած հրահանգների ու ցուցումների պահանջները, երբ անհրաժեշտ կազմակերպական-քաղաքական աշխատանք է տարվում երիտասարդ կոմունիստների ու ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ։



digitised by A.R.A.R.@

Ահա թե ինչու մեր հանձնաժողովը սկզբնական կուսկազմակերպություն-
ների քարտուղարների հետ տարվող աշխատանքը ևս համարում է իր առաջ-
նահերթ խնդիրներից մեկը՝ դրանում տեսնելով նաև իր հաջողությունների գրա-
վականը: Բավական է ասել, որ կուսակցության Ղափանի շրջանային կազմա-
կերպության նախորդ կոնֆերանսից հետո (այդ ժամանակ է կոմպլեկտավորվել
հանձնաժողովի նոր կազմը) հանձնաժողովի անդամները սկզբնական կուս-
կազմակերպությունների քարտուղարների սեմինարներում զեկուցումներ են
կարդացել «Կոմունիստի անհատական գործը, նրա կազմումն ու քննարկման
կարգը», «ՍՄԿԿ շարքերի ընդունելությունը և ընդունելության գործերի կազմու-
մը», «Կուսակցական երաշխավորություն», «Կուսակցական տույժ ստացած կո-
մունիստների հետ տարվող աշխատանքի մասին» թեմաներով: Ընդ որում, մենք
ձգտում ենք, որպեսզի այդ զեկուցումները չլինեն կուսակցության կանոնադրու-
թյան, հրահանգների պահանջների սոսկ շարադրանքը, այլ դրանց լույսի ներքո
հանգամանորեն վերլուծվի գործերի վիճակը մեր կազմակերպություններում,
տեղերից բերվեն կոնկրետ օրինակներ: Փորձը ցույց է տվել, որ նման զեկու-
ցումները և՛ հետաքրքրությամբ են լսվում, և՛ օգնում են գործին:

Կուսհանձնաժողովը շրջկոմի մյուս բաժինների հետ որոշակի աշխատանք
է տանում նաև երիտասարդ կոմունիստների ու ՍՄԿԿ անդամության թեկնա-
ծուների գաղափարաքաղաքական դաստիարակության նպատակով: Այսպես,
1977 թ. մարտին կուսակցության Ղափանի շրջկոմի պլենումը քննարկեց «ՍՄԿԿ
XXV համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցության շարքերի ընդու-
նելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության ասպարեզում
շրջանի կուսակցական կազմակերպություններում տարվող աշխատանքի մա-
սին» հարցը և, ի թիվս այլ միջոցառումների, որոշեց՝ շրջկոմին կից ստեղծել
երիտասարդ կոմունիստների և ՍՄԿԿ անդամության թեկնածուների մշտական
գործող դպրոց: Հանձնաժողովի անդամներն այստեղ զեկուցումներ են կարդա-
ցել «ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը կուսակցության հիմնական փաս-
տաթղթերն են», «Դեմոկրատական ցենտրալիզմը ՍՄԿԿ կազմակերպական
սկզբունքն է» և այլ թեմաներով:

Անշուշտ, կուսհանձնաժողովի աշխատանքի հաջողությունը, նրա ուժերի
նպատակային օգտագործումը մեծ չափով պայմանավորված են շրջանային կո-
միտեի, նրա բյուրոյի, քարտուղարների կողմից հանձնաժողովի նկատմամբ
ցուցաբերվող ճիշտ ղեկավարությամբ: Վերջերս ՀԿԿ Կենտկոմի քարտուղարու-
թյունը քննարկել էր «Հանրապետության կուսակցական կազմակերպություննե-
րում կոմունիստների անհատական գործերի քննարկման ժամանակ ՍՄԿԿ
կանոնադրության պահանջների ապահովման մասին» հարցը և ընդունել համա-
պատասխան որոշում: Կուսշրջկոմի բյուրոն այդ որոշման լույսի ներքո քըն-
նարկեց գործերի վիճակը շրջանի կուսկազմակերպություններում: Կատարված
դրական աշխատանքի հետ մեկտեղ նշվեցին այդ բնագավառում ինչպես սկըզբ-
նական կուսկազմակերպությունների, այնպես էլ մեր կուսհանձնաժողովի գոր-
ծունեության մեջ տեղ գտած թերությունները:

Եղել են դեպքեր, երբ կուսհանձնաժողովի առանձին առաջարկությունները
չեն հաստատվել շրջկոմի բյուրոյում: Մենք չենք կարողացել հասնել այն բա-
նին, որ հանձնաժողովի անդամները հաճախակի լինեն սկզբնական կուսկազ-
մակերպություններում, տեղերում օգնեն նրանց: Մենք լավ ենք հասկանում, որ
դեռ շատ անելիքներ ունենք, որ է՛լ ավելի բարձրացնենք հանձնաժողովի աշ-
խատանքի մակարդակն ու արդյունավետությունը, պատշաճ ձևով կատարենք
կուսակցական վերահսկողության ապահովման, կուսակցական ու պետական
կարգապահության ամրապնդման, կուսակցական կյանքի նորմերի պաշտպա-
նության մեր ֆունկցիաները:

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. Պ. ՍԱՐԳՍՅԱՆ**
ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմի կուսակցական-կազ-
մակերպական աշխատանքի բաժնի վարիչ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, նրա Կենտկոմը
մշտական հոգատարություն են ցուցաբերում կուսակ-
ցական կյանքի լենինյան նորմերի, կուսակցական ղեկավարման սկզբունք-
ների արմատավորման ու զարգացման նկատմամբ: Այդ համակարգում առանձ-
նահատուկ կարևորություն ունի նաև կուսակցական ժողովը: Այն կուսկազմա-
կերպության բարձրագույն օրգանն է, ուր կոլեգիալ կերպով լուծվում են քա-
ղաքական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական կյանքին առնչվող բազմա-
բնույթ հարցեր: Կուսակցական ժողովը կոլեգիալության ու ներկուսակցական
դեմոկրատիայի արտահայտությունն ու խորացումն է:

ՍՄԿԿ XXV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի.
Բրեժնևը շեշտեց. «Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացու-
մը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտության
բարձրացումը՝ լենինյան այս սկզբունքներն անցած փուլ չեն: Դրանք կուսակ-
ցության զարգացման հիմքն են նաև մեր օրերին» (ՍՄԿԿ XXV համագումարի
նյութերը, էջ 96): Այս դրույթը հավասարապես վերաբերում է նաև կուսակցա-
կան ժողովին:

Ղեկավարվելով կուսակցության ցուցումներով՝ ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմը
հետևողական աշխատանք է տանում կուսակցական ժողովների դերի ու նշա-
նակության հետագա բարձրացման, նրանց ներգործունության ուժեղացման
համար:

Կուսակցական ժողովը կոմունիստների ակտիվության և ստեղծագործա-
կան նախաձեռնության զարգացման, ներկուսակցական կյանքի կատարելա-
գործման արդյունավետ միջոց է, նրանց նպատակամղում է աշխատանքա-
յին ու հասարակական ակտիվ գործունեության:

Կուսակցական ժողովի նշանակությունը, սակայն, չի սպառվում նրանով,
որ այնտեղ մշակվում է կոլեկտիվ միտք: Քննարկելով ներկուսակցական կյան-
քի, տնտեսական և կուլտուրական շինարարության հանգուցային հարցերը՝
կոմունիստներն անցնում են քաղաքական դաստիարակության մեծ դպրոց,
նրանց մոտ ձևավորվում են սկզբունքայնություն, պատասխանատվություն, գա-
ղափարական համոզվածություն, սեփական գործունեությունը կոլեկտիվի կամ-
քին ենթարկելու պատրաստակամություն: Կուսակցական ժողովի քաղաքական-
կազմակերպական բարձր մակարդակը կոմունիստների վրա դաստիարակիչ ներ-
գործունություն է ունենում. յուրաքանչյուր կոմունիստ ձգտում է աշխատել
ստեղծագործաբար, լրիվ նվիրումով: Այս տեսակետից բնորոշ է Մուսայելյան
գյուղի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության գործունեությունը: Կազ-
մակերպությունում հաշվառման մեջ եղած կոմունիստների ճնշող մեծամաս-
նությունը աշխատում է արտադրության ոլորտում, ապահովում ավանգարդա-
յին դերը իր տեղամասում, հասարակական-քաղաքական կյանքում:



digitised by A.R.A.R.@

Մեր շրջանային կուսկազմակերպության կյանքում սկզբունքային կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Յարոսլավլի քաղաքային կուսկազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» հայտնի որոշումը։ Ելնելով այդ որոշման պահանջներից՝ կուսշրջկոմը ձգտում է, որպեսզի սկզբնական կուսկազմակերպություններում կուսժողովները հրավիրվեն ՍՄԿԿ կանոնադրական պահանջներին համապատասխան, անցնեն արդյունավետ և բովանդակալից, լինեն կոմունիստների և անկուսակցականների ուժերի մոբիլիզացման գործուն միջոց, նրանց դաստիարակության իսկական դպրոց, նրանցում քննարկվեն և լուծվեն բոլոր այն խնդիրները, որոնք ծառացած են տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների, սկզբնական կուսկազմակերպությունների առջև։ Այդ նպատակով շրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են տնտեսական մարմինների և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության տարբեր կողմերին վերաբերող հարցեր։ Կուսշրջկոմի և նրա բյուրոյի անդամները, ապարատի պատասխանատու աշխատողները, որպես կանոն, մասնակցում են կուսակցական ժողովներին։ Տեղերում հաճախակի են լինում շրջկոմի հրահանգիչները, բաժինների վարիչները, քարտուղարները։ Նրանք ուսումնասիրում են գործերի վիճակը, ցույց տալիս գործնական օգնություն։ Դրանով միաժամանակ ամրապնդվում է շրջկոմի կապը սկզբնական կուսկազմակերպությունների հետ։

Սկզբնական կուսկազմակերպության բարձրագույն օրգանը, ինչպես արդեն նշվել է, ժողովն է։ Դա նշանակում է, որ հենց այստեղ են քննարկվում ու լուծվում նրա կյանքի ու գործունեության հանգուցային, արմատական հարցերը։ Փորձը համոզիչ ցույց է տալիս, որ կուսակցական ժողովի հաջողությունը պայմանավորված է նրա բազմակողմանի և ստեղծագործական նախապատրաստմամբ։ Կուսակցական ժողովի արդյունավետության բարձրացման համար շատ կարևոր է օրակարգի ճիշտ ընտրությունը։ Մեծ նշանակություն ունի օրակարգում կուսկազմակերպության գործունեության հիմնական ուղղություններից բխող և հեռանկարային պլաններում արտացոլված հանգուցային, արմատական հարցերի ընդգրկումը։ Սկզբնական շատ կազմակերպություններ այդպես էլ վարվում են։ Դա միաժամանակ հետաքրքրություն է առաջացնում կոմունիստների մոտ կուսժողովների հանդեպ։

Օրակարգի ընտրության առնչությամբ նշեմ մի այսպիսի օրինակ։ Բավրայի սովխոզի նախորդ հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստները քննադատեցին սովխոզի դիրեկցիային այն բանի համար, որ տնտեսությունում լավ հիմքերի վրա չէր ոչխարաբուծության զարգացման գործը. ամեն տարի թերակատարվում էր բրդի արտադրության ու մթերումների պլանը, անկումները մեծ տոկոս էին կազմում, այդ ճյուղը շահութաբեր չէր։ Կուսկոմիտեի առաջարկությամբ հետագայում կուսակցական ժողովում քննարկվեց ոչխարաբուծական բրիգադի աշխատանքի վիճակը։ Քննարկումն անցավ գործարար մթնոլորտում։ Կոմունիստները լուրջ պահանջ ներկայացրին սովխոզի դիրեկցիային՝ անհապաղ վերացնելու տեղ գտած թերությունները, շտկելու կատարած սխալները։ Հիմնավորված կերպով քննադատվեցին թերությունները, ժողովն օգնեց արտադրության ռեզերվների բացահայտմանը։ Մշակելով թերությունները վերացնելու կոնկրետ միջոցառումներ՝ կուսակցական ժողովն առաջարկեց ոչխարաբուծական բրիգադի բրիգադավար Պ. Սումբուլյանին ազատել աշխատանքից և նրա փոխարեն առաջադրել ավելի բանիմաց ու նախաձեռնող մարդու։ Կուսժողովից հետո բրիգադում գործերի վիճակը բարելավվեց։ Երկրորդ տարին է, որ կոլեկտիվը սոցմրցության առաջավորների շարքում է։ Այսպիսի բազմաթիվ օրինակներ կարելի է բերել մյուս սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունից։

Հայտնի է, որ կուսակցական ժողովները լինում են դռնփակ կամ դռնբաց։ Դռնբաց ժողովները մասսաների հետ կապի ամրապնդման ձևերից են։ Դրանց նախապատրաստումն ու անցկացումը կազմակերպվում է այնպես, որ հարցերի քննարկումներին ակտիվորեն մասնակցեն և իրենց մտքերն արտահայտեն նաև



անկուսակցականները։ Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում, որպես կանոն, հանրային արտադրությանն առնչվող հարցերը քննարկվում են դռնբաց ժողովներում։ Անցած տարի Թորոսգյուղի սովխոզային սկզբնական կուսկազմակերպության ժողովում քննարկվեց կերի կուտակումն անցկացնելու հարցը։ Ժողովին ակտիվորեն մասնակցում էին նաև կոմերիտականները և անկուսակցականները։ Նրանք բացահայտեցին այդ գործում տեղ գտած թերությունները, օգնեցին կոմունիստներին՝ ընդունելու գործնական, տնտեսության շահերից բխող որոշում։ Արդյունքը եղավ այն, որ կազմակերպված և անկորուստ անցկացվեցին խոտհնձի ու կերի սիլոսացման աշխատանքները, գերակատարվեցին կուտակման առաջադրանքները, հանրային հոտը ապահովվեց կերի առատ պաշարով։ Ընթացիկ տարվա ձմռան սեզոնում սովխոզում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, զգալի չափով մեծացավ մսի, կաթի արտադրության ու մթերումների ծավալը։

Շրջանի շատ կուսկազմակերպություններում, ժողովների օրակարգի հարցերի քննարկման ակտիվությունն ու օգտակարությունն ապահովելու նպատակով, դրանց նախապատրաստման համար ստեղծվում են հանձնաժողովներ, որտեղ ընդգրկվում են կուսակցական ակտիվիստներ, շարքային կոմունիստներ, մասնագետներ, գործին լավատեղյակ ընկերներ։ Ահա մի բնորոշ օրինակ։ 1977 թվականին էր, Ղազանչիի սովխոզի կուսկազմակերպության ժողովում քննարկվելու էր կաթի արտադրության վիճակը։ Կուսկոմիտեն նախապես ստեղծեց հանձնաժողով, որի կազմում ընդգրկեց անասնապահության հարցերին լավատեղյակ կոմունիստների։ Հանձնաժողովի նախագահ նշանակվեց կուսկոմիտեի անդամներից մեկը։ Նախապատրաստությանը մասնակցեցին նաև ժողովրդական վերահսկողության խմբի անդամներ, արտադրության առաջավորներ։ Նրանք հանգամանորեն հրահանգավորվեցին. յուրաքանչյուրի համար պարզ էր, թե ինչի վրա պետք է կենտրոնացվեր գլխավոր ուշադրությունը։ Հանձնաժողովի անդամները մանրակրկիտ ստուգեցին ֆերմաների սանիտարական վիճակը, հետաքրքրվեցին անասունների կերակրման տեխնոլոգիայի կիրառմամբ։ Նրանք ծանոթացան անասնապահների շրջանում տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի, սոցմրցության կազմակերպման, օրվա աշխատակարգի պահպանման դրվածքին։ Ստուգման ընթացքում հանձնաժողովի անդամները, մեծամասամբ գտնվելով անասնապահների շրջանում, միաժամանակ բացատրում և պարզաբանում էին նրանց առաջադրված խնդիրները և գործնական օգնություն ցույց տալիս հայտաբերված թերությունների վերացմանը։ Հարցի համակողմանի նախապատրաստման շնորհիվ կուսակցական ժողովն անցավ քաղաքական բարձր մակարդակով, կոմունիստների ու անկուսակցականների ակտիվ մասնակցության պայմաններում։ Հատկանշական է, որ շատերը ցանկացան ելույթ ունենալ, նրանց թվում և՝ անկուսակցականներ։ Ելույթները գործնական էին, քննադատությունը՝ կոնկրետ, հասցեագրված։ Ժողովը մշակեց գործերի վիճակի բարելավման միջոցառումներ։ Համակողմանի նախապատրաստումն ու գործնական քննարկումը վճռական ազդեցություն թողեցին. կաթի արտադրության ծավալը 1977 թ. 1975 թ. համեմատությամբ աճեց 35,4 տոկոսով, մեկ կովի կաթնատվությունն ավելացավ 500 կիլոգրամով, կաթի մթերումների տարեկան պլանը կատարվեց 140 տոկոսով։

Կուսակցական ժողովում յուրաքանչյուր հարց քննարկելիս անչափ կարևոր է զեկուցողի ճիշտ ընտրությունը։ Ժողովի բովանդակությունն ու մակարդակը, նրա գործնականությունը պայմանավորված են զեկուցման բարձր որակով։ Երբ քննարկման դրված հարցերը վերլուծվում են սկզբունքային դիրքերից, օբյեկտիվ գնահատական է տրվում կատարված աշխատանքին, բացահայտվում են տեղ գտած թերություններն ու բացերը, դրանց պատճառները, ապա այդ ամենը մեծապես նպաստում է կոմունիստների ակտիվության բարձրացմանը, մտքերի աշխույժ փոխանակությանը։ Նման դեպքում քննարկմանը անհաղորդ չեն մնա նույնիսկ պասիվն ու անտարբերը։ Անկախ այն բանից, թե զեկուցումն ինչի մասին է,— արտադրական բնույթի հա՞րց է քննարկվում, կազմակերպական, թե՞ քաղաքական,— պետք է դրսևորվի կուսակցական մոտեցում քննարկ-



digitised by A.R.A.R.@

նիստի կոլեկտիվ գործողությունները։ Այս խրոխությունը լավ են ըմբռնել Ղա-
զանչիի, Յողամարգի սովխոզային, Փոքր Սեպասարի միջտնտեսային ձեռնար-
կության կուսկազմակերպությունները։ Նրանք ընդունում են հիմնավորված,
գործնական և պարտավորեցնող որոշումներ, նախատեսում կոնկրետ կատա-
րողներին ու ժամկետները։ Բոլոր կազմակերպությունները մշակել և հաստատել
են որոշումների կատարման հսկողությունը կազմակերպելու կարգ։ Պրակտիկա
է դարձել ամեն մի ժողովում կոմունիստներին նախորդ ժողովների որոշումների
ու քննադատական դիտողությունների կատարման մասին ինֆորմացիա տալը,
որը նպաստում է կոմունիստների ակտիվության և կուսակցական կազմակեր-
պության մարտունակության բարձրացմանը, քննադատության և ինքնաքննա-
դատության զարգացմանը։

Կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների կյանքում առա-
վել կարևոր իրադարձություն են հաշվետու-ընտրական ժողովները։ Դրանք
տարբերվում են սովորական ժողովներից և երկար ժամանակ մնում են կոմու-
նիստների հիշողության մեջ, հատկապես, երբ անցնում են մեծ կազմակերպ-
վածությամբ։ Վերջերս կազմակերպական և գաղափարական բարձր մակարդա-
կով անցավ Մուսայելյանի սովխոզային կուսկազմակերպության (կուսբյուրոյի
քարտուղար՝ Ռ. Սահակյան) հաշվետու-ընտրական ժողովը։ Ինչպես կուսբյու-
րոն, այնպես էլ կոմունիստները ժողովին նախապատրաստվել էին ամենայն
պատասխանատվությամբ։ Նշանակված ժամին, բոլոր կոմունիստների մաս-
նակցությամբ, սկսվեց հաշվետու-ընտրական ժողովը։ Հաշվետու զեկուցման
մեջ, գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV հա-
մագումարի և Կենտկոմի պլենումների որոշումների, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զե-
կուցումներում ու ելույթներում առաջ քաշված խնդիրների ու պահանջների լույ-
սի ներքո, խորությամբ ու բազմակողմանիորեն վերլուծվել էր կուսկազմակեր-
պության գործունեությունը։ Նշվել էր, որ սովխոզի աշխատավորները, լայնորեն
ծավալելով սոցիալիստական մրցությունը, ի պատիվ ՍՍՀՄ Սահմանադրության
ընդունման առաջին տարեդարձի և Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի
միավորման 150-ամյակի, սեպտեմբերի 15-ին զեկույց տվեցին կաթի և մսի
արտադրության ու մթերումների հնգամյակի երեք տարվա ծրագիրը կատարելու
մասին։ Կատարվել ու գերակատարվել են կաթի, մսի ատադրության ու մթե-
րումների, անասունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանները։
Բարձրացել է անասունների մթերատվությունը, անասնապահության վարման
կուլտուրան։ Կառուցվել և շահագործման են հանձնվել նոր ժամանակակից
ֆերմա, կերարտադրամաս, լիովին մեքենայացվել են աշխատատար գործողու-
թյունները, բարելավվել են աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանները։

Հաջողությունները քիչ չեն դաշտավարության բնագավառում։ Չնայած
բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, երկրագործները կարողացան
ժամանակին և անկորուստ անցկացնել կերի կուտակման ու բերքահավաքի աշ-
խատանքները, հանրային հոտն ապահովել կերի անհրաժեշտ պաշարով։

Ձեռք բերված հաջողությունները վկայում են, որ կուսկազմակերպությունը
կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքը նպա-
տակամղել է տնտեսական խնդիրների լուծմանը, հաշվետու ժամանակաշրջա-
նում կուսակցական ժողովներում քննարկել հանրային արտադրությանն ու կո-
մունիստների դաստիարակությանը վերաբերող բազմաթիվ հարցեր, բացահայ-
տել ու վերացրել այն բոլոր թերություններն ու վրիպումները, որոնք այս կամ
այն չափով խոչընդոտել են գյուղատնտեսության զարգացմանը։

Հաշվետու զեկուցման քննարկման ժամանակ կոմունիստները դրսևորեցին
մեծ ակտիվություն։ Ութ մարդ ելույթ ունեցավ։ Ինչպես հաշվետու զեկուցու-
մում, այնպես էլ կոմունիստների ելույթներում ուշադրությունը կենտրոնացված
էր կուսկազմակերպության և սովխոզի առջև ծառացած կարևոր պրոբլեմներին,
դեռևս չլուծված խնդիրների ու եղած թերությունների և վրիպումների վրա։
Կուսբյուրոն և սովխոզի դիրեկցիան քննադատվեցին՝ նախորդ հաշվետու-ընտ-
րական ժողովի հանձնարարականները լիովին չկատարելու համար։ Նշվեց, որ
նրանք նպատակային աշխատանք չեն տարել էկոնոմիկայի բոլոր ճյուղերի վե-



րելքն ապահովելու համար, չեն հետևել արտադրության զարգացման բոլոր ռե-
զերվների ու հնարավորությունների (հող, տեխնիկա, պարարտանյութեր, ջրովի
տարածություններ) արդյունավետ օգտագործմանը, որի հետևանքով չեն կա-
տարվել հացահատիկի համախառն արտադրության և բերքատվության, բրդի
արտադրության ու մթերումների առաջադրանքները։ Արտադրության արդյու-
նավետության և արտադրանքի որակի բարձրացման առանձին հարցեր անու-
շադրության են մատնվել. ընթացիկ տարում մթերակայան հանձնած ամբողջ
կաթի միայն 40 տոկոսն է եղել առաջին տեսակի, որի պատճառով սովխոզը
նյութական մեծ վնաս է կրել։ Դեռևս բարձր է արտադրված գյուղատնտեսական
մթերքների ինքնարժեքը։

Հաշվետու-ընտրական ժողովը մշակեց կոնկրետ միջոցառումներ։ Խնդիր
դրվեց կուսբյուրոյի առջև՝ կուսկազմակերպության գործունեությունը վերակա-
ռուցել կուսակցության առաջադրած նոր խնդիրներին համապատասխան, ա-
պահովել գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտ-
կոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումների անթերի կատարումը, բարձ-
րացնել կուսակցական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մա-
կարդակը, կադրերի պատասխանատվությունը վստահված գործի նկատմամբ։

Բարձրացնելով կուսակցական ժողովների դերն ու նշանակությունը՝ կուս-
շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները կազմակերպական ու
քաղաքական աշխատանքը նպատակամղում են տնտեսական և կուլտուրական
շինարարության խնդիրների հաջող լուծմանը, աշխատավորների կոմունիստա-
կան դաստիարակության բարելավմանը։ Գյուղատնտեսության աշխատողները,
հաջողությամբ եզրափակելով հոբելյանական տարին, ռեալ նախադրյալներ
ստեղծեցին հնգամյակի երրորդ տարվա պլանային առաջադրանքների կատա-
րումն ապահովելու համար։

Տնտեսական բնագավառում ձեռք բերած հաջողությունները վկայում են, որ
շրջանի կուսակցական կազմակերպություններում նկատելիորեն բարելավվել է
կազմակերպական ու քաղաքական աշխատանքը, բարձրացել է կուսակցական
կազմակերպությունների մարտունակությունը, ուժեղացել է աշխատավոր-
ների կոմունիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը։
Եվ այդ ամենի մեջ որոշակի է կուսակցական ժողովների խաղացած դերը։

Ինչ խոսք, հաջողություններն ավելին կլինեին, եթե բոլոր կուսակցական
կազմակերպություններում անհրաժեշտ մակարդակի վրա լիներ կազմակերպա-
կան և քաղաքական աշխատանքը, լուրջ նշանակություն տրվեր կուսակցական
ժողովների դերի բարձրացմանը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս,
որ Ջույգաղբյուրի, Ղուկասյանի սովխոզային, ճանշինտեղամասի և կոմունալ-
կենցաղային ծառայության սկզբնական կուսկազմակերպություններում լավ
չեն նախապատրաստվում և անցկացվում կուսակցական ժողովները, նրանցում
խորությամբ չեն քննարկվում հարցերը, վատ են կազմակերպվում կուսակցու-
թյան և կառավարության դիրեկտիվների, սեփական որոշումների կատարման
վերահսկողությունն ու ստուգումը։ Այդ պատճառով կուսակցական ժողովները
ներգործուն չեն, այդ տնտեսություններն ու հիմնարկ-ձեռնարկությունները մի
շարք ցուցանիշներով թերակատարեցին անցած տարվա պլանային առաջա-
դրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները։

Կուսակցության շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպու-
թյունները, մշտապես կատարելագործելով ներկուսակցական աշխատանքի ձե-
վերն ու մեթոդները, ձգտում են ամեն կերպ բարձրացնել կուսակցական ժողով-
ների դերն ու նշանակությունը ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիր-
ների կատարման համար մղվող համաժողովրդական պայքարում։

---

digitised by A.R.A.R.@

## Գրախոսություն և քննադատություն

# ԲՈՑԱՇՈՒՆՉ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՀԱՎԱՏԱՄՔԸ

### ԲՈԳԴԱՆ ԿՆՈՒՆՅԱՆՑԻ «ԸՆՏԻՐ ԵՐԿԵՐ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌԹԻՎ

Անցած տարեմուտին սովետական հասարակայնությունը ջերմորեն նշեց մեծանուն հեղափոխական ու կուսակցական գործիչ, Վ. Ի. Լենինի հավատարիմ զինակից Բոգդան Կնունյանցի ծննդյան 100-ամյակը։ Հենց այդ ժամանակ էլ առաջին անգամ լույս տեսավ նրա Ընտիր երկեր-ի հայերեն ժողովածուն, որը նախապատրաստել էր ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալն ու իրականացրել «Հայաստան» հրատարակչությունը։ Անշուշտ, դա խրախուսանքի արժանի շնորհակալ գործ է, աննկուն հեղափոխականի պանծալի հիշատակի մի նոր հավերժացում և լավագույն նվեր մասսայական ընթերցողին։

1970 թվականի նոյեմբերի 29-ին Սովետական Հայաստանի 50-ամյակի առթիվ արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջին իսկ քայլերից հայ ժողովրդի լավագույն զավակներն ամենայն ակտիվությամբ մասնակցեցին դրան։ Նրանք հանդես եկան որպես իսկական լենինյան ինտերնացիոնալիստներ և արժանի ավանդ ներդրին մարքսիստական կուսակցության ստեղծման ու զարգացման, երկրի հեղափոխական վերակերտման մեջ։ Այդ փայլուն համաստեղության պայծառ աստղերից էր Բոգդան Կնունյանցը, որը ռուսաստանյան մարքսիստների առաջին սերնդի ներկայացուցիչներից էր, լենինյան տիպի պրոֆեսիոնալ հեղափոխական, բոլշևիկյան ականավոր գործիչ։ Դրա պերճախոս վկայությունն են նրա փոթորկալից կյանքը, հասարակական-գրական բեղմնավոր գործունեությունը։

Ժողովրդական ուսուցիչ Միրզաջանի 17-ամյա որդի Բոգդանը, գերազանց ավարտելով Շուշիի ռեալական ուսումնարանը, ցուցաբերում է վառ հետաքրքրասիրություն հասարակական կյանքի նկատմամբ և մոտիկից շփվում հեղափոխական շարժմանն ու ծանոթանում մարքսիստական գրականությանը։



Նրա համար իսկական շրջադարձը տեղի է ունենում Պետերբուրգում, ուր 1896 թվականին ընդունվում է տեխնոլոգիական ինստիտուտի քիմիական ֆակուլտետը և մխրճվում հեղափոխական շարժման հորձանուտը. հաջորդ տարին նա դառնում է սոցիալ-դեմոկրատական շարժման ակտիվ մասնակիցներից մեկը՝ զինվորագրվելով Վ. Ի. Լենինի ստեղծած «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությանը»։ Այդպես նա կանգնեց մեծ պայքարի լենինյան ուղու վրա և իր ողջ կյանքն անմնացորդ նվիրեց աշխատավոր ժողովրդի ազատագրման վեհ գործին։

Ցարիզմի անլուր հալածանքների ու հետապնդումների պայմաններում, ցուցաբերելով անսասան կամք ու հաստատակամություն, Բ. Կնունյանցը մարտնչում էր Ռուսաստանում ու Անդրկովկասում, գլխավորում ուսանողական ու բանվորական շարժումները, ստեղծում մարքսիստական խմբակներ ու սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ։ Նա պայքարում էր պրոլետարական կուսակցության ստեղծման լենինյան պլանի համար և, հիրավի, դարձավ այդպիսի կուսակցության կերտողներից մեկը։

Կնունյանցը լենինյան-իսկրայական ուղղության առաջամարտիկներից էր Անդրկովկասում։ 1901 թվականին նրա ղեկավար մասնակցությամբ ձևավորվեց ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեն, որը ծավալեց հեղափոխական լայն գործունեություն։ Բ. Կնունյանցը խորապես հասկացավ երկրամասի արդյունաբերական խոշոր կենտրոնի դերը համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ։ «Իսկրա»-ի 1902 թվականի սեպտեմբերի 1-ի (14-ի) համարում լույս տեսած Նամակ Բաքվից բնորոշ հաղորդագրությամբ է սկսվում նրա Ընտիր երկեր ժողովածուն։ Այստեղ նկարագրվում է «մաղութի թագավորության» ծանր պատկերը, բայց և ընդգծվում, որ ռուսական «հեղափոխական պայքարի թնդյունը հասավ մինչև Բաքու» և «Կորչի ինքնակալությունը» կոչը տարածվեց ամբողջ քաղաքում. անմիջապես փոխվեց, բարձրացավ բանվորների և հասարակության կարծիքը Բաքվի բանվորների մասին։

Բ. Կնունյանցը գործում էր Բաքվում, Թիֆլիսում, Երևանում, Գանձակում, Շուշիում և այլուր, ակտիվ մասնակցում տեղական սոցիալ-դեմոկրատական խմբակների ու կազմակերպությունների ստեղծմանը, կազմակերպում բանվորների և մյուս աշխատավորների հեղափոխական ելույթները։ Լինելով Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական շարժման ճանաչված դեմքերից մեկը՝ մասնակցում է ՌՍԴԲԿ Կովկասյան միության ստեղծմանը և ընտրվում դրա ղեկավար մարմնի՝ միութենական կոմիտեի կազմում։

Երկրամասում եռանդուն գործունեություն է ծավալվում ՌՍԴԲԿ II համագումարի նախապատրաստման համար։ Բ. Կնունյանցն ընտրվում է համագումարի պատգամավոր և շուտով մեկնում արտասահման։ 1903 թվականի ամռանը Ժնևում առաջին անգամ նա հանդիպում է Վ. Ի. Լենինին. այդ հանդիպումը խոր ազդեցություն է թողնում երիտասարդ հեղափոխականի վրա։ ՌՍԴԲԿ II համագումարում Բ. Կնունյանցը ներկայացնում էր Բաքվի կազմակերպությունը՝ 2 ձայնի իրավունքով և իր բազմաթիվ ելույթներում (ավելի քան 50) հետևողականորեն պաշտպանում լենինյան գիծը։ Կոմունիստական սկզբունքայնությամբ, տեսական խորությամբ ու գործիմացությամբ հագեցած ելույթները զետեղված են նրա Հատընտիր-ում։ Համագումարի սկզբից իսկ, երբ քննարկվում էր Բունդի տեղի հարցը, Բ. Կնունյանցը, պաշտպանելով մարքսիստական կուսակցության ստեղծման պրոլետարական-ինտերնացիոնալիստական սկզբունքը, բազմակողմանի մերկացրեց օպորտունիստների ազգայնական քարոզները. «Բունդում տիրապետող տենդենցն ընդհանուր ոչինչ չունի սոցիալիզմի հետ... Ես գտնում եմ, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ ամբողջ Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի ներկայացուցիչն է... ես կազմակերպության այնպիսի տիպի կողմնակից եմ, որի դեպքում յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր շրջանում գոյություն ունենան պահանջվող լեզուներով ագիտացիա մղող միասնական կուսակցական կազմակերպություններ» (նույն տեղը, էջ 36, 39)։ Կնունյանցն իր ելույթն ամրապնդեց Կովկասից բերած կոնկրետ օրինակներով և նշեց, որ այնտեղ սոցիալ-դեմոկրատական շարժումը ծավալվում է դասակարգային-ին-



digitised by A.R.A.R.@

տերնացիոնալ հիմքի վրա՝ անհաշտ ու վճռական պայքար մղելով նացիոնալիստական ու ֆեդերալիստական տենդենցների դեմ։

Կնունյանցը պայքարում էր միասնական ու կենտրոնացված կուսակցության համար առանց օպորտունիզմի և ընդդեմ օպորտունիզմի։ Նա գտնում էր, որ մարքսիստական կուսակցությունը պրոլետարիատին անսահման նվիրված համախոհ մարդկանց ամրակուռ կազմակերպություն է, որի անդամն ունի ոչ թե իրավունքներ, այլ բազմաթիվ պարտականություններ։ Ինչ վերաբերում է նրա ղեկավար մարմիններին, ապա դրանք պետք է կազմվեն ամենապատրաստված ու կոփված ընկերներից, որոնք ունակ են ուղղություն տալու կուսակցության գործունեությանը։ Հենց այդ դիրքերից էլ նա ՌՍԴԲԿ II համագումարում հետևողականորեն պաշտպանեց Կենտրոնական օրգանի ու Կենտկոմի կազմում եռյակներ ընտրելու լենինյան դրվածքը։ Կնունյանցը խստորեն քննադատեց ու մերժեց օպորտունիստների քաղքենիական հայացքներն ու ոտնձգությունները՝ սողոսկելու այդ օրգանները։ Դատապարտելով Մարտովի ու Տրոցկու պառակտիչ գործելակերպը՝ նա ասաց. «Հիմնական փաստարկը, որի վրա հենվում են եռյակների ընտրության հակառակորդները, հանգում է կուսակցական գործերի նկատմամբ զուտ քաղքենիական հայացքին... Եթե մենք այստեղ հավաքվել ենք ոչ թե փոխադարձ հաճելի ճառերի համար, ոչ թե քաղքենիական քնքշությունների համար, այլ կուսակցություն ստեղծելու համար, ապա մենք ոչ մի կերպ չենք կարող համաձայնել այդպիսի տեսակետին»։ Դիմելով համագումարի պատգամավորներին, Բ. Կնունյանցը նրանց ուշադրությունն է հրավիրում. «Բոլոր ընտրությունների ժամանակ, ինչպես և իրենց բոլոր արարքներում, կանգնած լինել կուսակցության շահերի, ընդհանուր գործի շահերի տեսակետի վրա» (նույն տեղը, էջ 52—53)։

Կնունյանցի մարքսիստական համոզմունքները և հեղափոխական կայունությունը դրսևորվեցին համագումարի օրակարգի բոլոր հիմնական հարցերում, որոնց քննարկմանը նա ունեցավ գործուն մասնակցություն։ Վ. Ի. Լենինը գոհ էր նրա հստակ ու նպատակասլաց դիրքորոշումից և օպորտունիստներին տված հուժկու հարվածներից։ Մի քայլ առաջ, երկու քայլ ետ գրքում, վկայակոչելով մասնավորապես Կնունյանցի (Ռուսովի) մարտական ելույթը «Իսկրա»-ի խմբագրության ընտրության առթիվ, Լենինը գրել է. «Մենք խորհուրդ կտայինք բոլորին, ովքեր ուզում են ինքնուրույնաբար վերլուծել կուսակցական պառակտման պատճառները և գտնել նրա արմատները համագումարում, կարդալ և վերստին կարդալ ընկ. Ռուսովի ճառը, որի փաստարկումները փոքրամասնությունը ոչ միայն չհերքեց, այլև նույնիսկ չվիճարկեց։ Ասենք, չէր կարելի վիճարկել այնպիսի տարրական, այբբենական ճշմարտություններ, որոնց մոռացումն արդեն ինքն ընկ. Ռուսովն արդարացի կերպով բացատրում էր միայն «ներվային գրգիռով»» (ԵԼԺ, հ. 8, էջ 376)։

Շնորհիվ Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների ու կողմնակիցների եռանդուն ջանքերի, համագումարում հաղթանակեց հեղափոխական գիծը և ստեղծվեց պատմության մեջ առաջին նոր տիպի՝ մարքսիստական պրոլետարական կուսակցությունը։ Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այդ ֆորումին մասնակցել են նաև մեր ժողովրդի լավագույն զավակները (Բ. Կնունյանց, Ա. Զուրաբյան)։

Այնուհետև Բ. Կնունյանցը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ աշխատում է Ժնևում և ակտիվ մասնակցում «Իսկրա»-ի 46—51 համարների հրատարակությանը։ Դրանց էջերում լույս են տեսնում նրա մի շարք հոդվածները (Բաքվի բանվորական անընդմեջ գործադուլների պատճառները, Նոր թալան, Նամակ խմբագրությանը, Մեր տակտիկայի և կազմակերպության մի քանի հարցեր), որոնց մեջ նա հանգամանորեն վերլուծում է Բաքվի ու Անդրկովկասի սոցիալ-տնտեսական ու քաղաքական դրությունը, հեղափոխական շարժումների վերելքը, սոցիալ-դեմոկրատների ակտիվ գործունեությունը. «Կովկասի ներկայիս իրադարձությունների արդյունքներից մեկը հեղափոխական գիտակցության աճն է, խուլ գյուղերում անգամ ինքնակալության նկատմամբ անհաշտ թշնամական տրամադրության աճը։ Անլեգալ գրականությունը խլխլելով է վաճառ-



վում։ Բոլոր վայրերից միութենական կոմիտեն ստանում է ագիտացիոն գրականության պահանջ... Մեր թռուցիկները թափանցել են Կովկասի բոլոր անկյունները... և մոտ ժամանակում մեզ կհաջողվի կազմակերպել այնտեղ մեր խմբակները» (Բ. Կնունյանց, Ընտիր երկեր, էջ 84—85)։

Կնունյանցը հատուկ ուշադրություն է նվիրում նացիոնալիզմի դեմ մղվող պայքարին։ Նա շեշտում է, որ նացիոնալիզմը բուրժուազիայի ռեակցիոն և ուժեղ զենքերից մեկն է, որով նա ձգտում է մթագնել պրոլետարիատի գիտակցությունը և բթացնել նրա դասակարգային պայքարը։ Այսպիսին են մեծապետական շովինիզմը, հակասեմիտիզմը, սիոնիզմը, տեղական նացիոնալիզմը և այլն, որոնք տարբեր ձևերով սերմանում են թշնամություն ժողովուրդների միջև և ջլատում նրանց հեղափոխական ազատագրական համատեղ պայքարը ցարական բռնակալության դեմ։ Ուստի, պետք է միշտ և ամենուրեք մերկացնել նացիոնալիստներին, որպես ժողովուրդների թշնամիների, և համախմբել աշխատավոր զանգվածներին, առանց ազգային խտրության. «Միայն կազմակերպվելով որպես միասնական, միանգամայն ինքնուրույն կուսակցություն, առանց ազգությունների տարբերության, Ռուսաստանի պրոլետարիատը կարող է դառնալ այն քաղաքական հզոր ուժը, որն ընդունակ կլինի դառնալու երկրի բոլոր հեղափոխական ուժերի իսկական ավանգարդը և ի վերջո խորտակելու ինքնակալությունը» (նույն տեղը, էջ 95)։

Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ Բ. Կնունյանցը, որպես Կենտկոմի գործակալ, 1903 թվականի վերջին վերադառնում է Կովկաս և ապա մեկնում Մոսկվա, ուր եռանդուն գործունեություն է ծավալում։ Դա աննկատ չի մնում ցարական խուզարկուների աչքից և 1904 թվականի փետրվարին նա ձերբակալվում է ու նետվում Տագանկայի բանտը։ Բայց նա չի ընկճվում և կնոջը՝ Ե. Վ. Գոլիկովային գրած նամակում նշում է, որ ինքը «շարունակ մարտի է ձգտում»։ Բանտում էին նաև ՌՍԴԲԿ Մոսկվայի կոմիտեի մյուս գործիչները՝ Ն. Բաումանը, Ֆ. Լենգնիկը, Ե. Ստասովան և ուրիշներ, որոնց հետ Բ. Կնունյանցը մեծագույն հմտությամբ մերկացնում է մենշևիկներին։ Նրանք բոլոր հնարավոր ձևերով պայքարում են կուսակցության III համագումարի հրավիրման համար, կազմում «ՌՍԴԲԿ 19 անդամների կոչը», որն անմիջական արձագանք էր Վ. Ի. Լենինի գլխավորած 22 բոլշևիկների խորհրդակցության կուսակցությանը հղած հայտնի դիմումի։

Բացառիկ հետաքրքրական ու նշանակալից էր Բ. Կնունյանցի ճառը Մոսկվայի դատական ատյանում, 1905 թվականի մարտի 31-ին։ Ցարական իշխանությունը նրան մեղադրում էր ՌՍԴԲԿ-ին պատկանելու և հեղափոխական գործունեության համար, որը դիտվում էր որպես «պետական հանցագործություն» և ենթակա էր խստագույն պատժի։ Բ. Կնունյանցը լիովին օգտագործեց երկրում տիրող հեղափոխական իրավիճակը և ցարական դատարանում հանդես եկավ մեղադրական, տիրող կարգերը մերկացնող ճառով, շարադրելով լենինյան կուսակցության ծրագրային պահանջները։ Բ. Կնունյանցը ամենից առաջ նշեց, որ ցարական Ռուսաստանում «բառի էության դատարան չկա. դատարանի փոխարեն մեզ մոտ կա ոստիկանական տանջարան», որտեղ «հասարակական կարծիքից հեռու, խիստ գաղտնապահության քողի տակ արյունոտ դատաստան են տեսնում գոյություն ունեցող կարգի թշնամիների հետ... տաժանակրություն, աքսոր, կախաղան՝ ահա մեր դատարանների պատասխանը ազատության մարտիկներին» (նույն տեղը, էջ 107, 110)։ Հենց այդ տիրող կարգերի՝ ցարական բռնակալության դեմ է պայքարում ՌՍԴԲԿ-ն՝ արտահայտելով պրոլետարիատի և բոլոր աշխատավորների արմատական շահերը։ Դիմելով ցարական դատավորներին՝ Բ. Կնունյանցն ասում է. «Եթե դուք հետևողական լինեիք, պետք է մեղադրյալների աթոռին նստեցնեիք ամբողջ ռուս ժողովրդին և հարյուր հազարավոր պրոլետարների»։ Բայց նրանք անզոր են այդ անելու, որովհետև «...այժմ ամբողջ ժողովուրդն է դարձել հեղափոխական, իսկ ժողովրդին դեռ ոչ մի դատարան չի համարձակվել դատելու... ամբողջ Ռուսաստանը ալեկոծվում է ու եռում. այսօր չէ, վաղը, ոչ հին կառավարությունից, ոչ դատական որոշումների ու դատավճիռների ամբողջ հնոտիքից ոչինչ չի մնա, և նրանք, ովքեր այժմ



digitised by A.R.A.R.@

բոլշևիկյան խմբում մասնակցել II ինտերնացիոնալի Շտուտգարդի կոնգրեսին։ Դրան նվիրված իր հոդվածում նա մասնավորապես քննարկում է միլիտարիզմի ու պատերազմի հարցը և շեշտում, որ դրանք կապիտալիզմի մշտական ուղեկիցներն են. «Պատերազմներն ընկած են կապիտալիզմի բուն էության մեջ. դրանք կդադարեն միայն այն ժամանակ, երբ կդադարի գոյություն ունենալ կապիտալիստական կարգը...» (Նույն տեղը, էջ 498)։ Ուրեմն, կոմունիստներն ամենուրեք պետք է պայքարի սլաքն ուղղեն կապիտալիզմի դեմ և ժողովուրդներին ցույց տան, որ միայն սոցիալիզմն է բերում իսկական խաղաղություն։ Այդ թեզը հույժ այժմեական է հատկապես այսօր, երբ կենսագործվում է ՍՄԿԿ XXIV ու XXV համագումարների մշակած խաղաղության ծրագիրը, և աշխարհի ժողովուրդները տեսնում են դրա բարերար արդյունքները։

Ստոլիպինյան դաժան ռեակցիայի տարիներին Բ. Կնունյանցը գտնվում էր Բաքվում և գործում ընդհատակում (Ս. Մարգարով ծածկանունով)։ Նա կարդում էր դասախոսություններ և գրում հոդվածներ (Դարձյալ «խորհրդակցության» մասին, Լիազորների խորհուրդը և երաշխիքները, Նեոսլավոնական սուտ, Նավթարդյունաբերողների համագումարը, Գյուղական եկավ, Թուրքիայի իրադարձությունների շուրջ, Ֆինլանդական գործեր և այլն), որոնց մեջ լուսաբանում է տեղական ու միջազգային բնույթի կենսական հարցեր։ Նա համոզված էր, որ ռեակցիայի հաղթանակը ժամանակավոր է, և նորից կհասունանա հեղափոխությունը, քանզի երկրում մնում են այն ծնող պատճառները։ Ուստի, ոչ թե պետք է ընկճվել, այլ դիմակայել դժվարություններին և կազմակերպված գնալ դեպի նոր գոտեմարտ. մարտնչող դասակարգը ուժը քաղում է իր կազմակերպվածությունից ու գիտակցությունից. «Ստեղծել համախմբված և ուժեղ կազմակերպություններ՝ մեր առաջնահերթ պարտականությունն է» (էջ 509)։

Բոգդան Կնունյանցը թրծվել ու կոփվել է համառուսաստանյան հեղափոխական պայքարի հորձանուտում և նրա բազմաբեղուն գործունեության շառավիղներն ունեցել են համակուսակցական ընդգրկում։ Մարքսիստ-լենինյան էր նա, անհողդողդ ինտերնացիոնալիստ և արդարացիորեն իր ժողովրդի ազատագրումը տեսնում էր ռուսական կայսրության բոլոր ժողովուրդների համատեղ պայքարում, որի հաղթանակը կապահովեր շահագործողական կարգերի տապալումը և բանվորագյուղացիական պետության ստեղծումը։ Նրա բազմաթիվ երկերում (Նամակ Բաքվից, Մի քանի խոսք «Մշակի» մասին, ՌՍԴԲԿ II համագումարում արտասանած ճառերը, Նոր թալան, Նամակ խմբագրությանը, «Իսկական սոցիալիստները» և խորհրդակցություն և այլն) լուսաբանված են հայ ժողովրդի ծանր կացությունը, անլուր ճնշումները ցարական Ռուսաստանում և արյունալից գազանությունները սուլթանական Թուրքիայում, ուր հոշոտվում էր արևմտահայությունը։ Սակայն Կնունյանցը լավատես էր պատմության նկատմամբ և շեշտում էր, որ չնայած բոլոր արհավիրքներին, հայ աշխատավորը մարտնչում է, մղում ազատագրական պայքար, ակտիվ մասնակցում հեղափոխական շարժումներին։ Մասնավորապես անդրադառնալով 1903 թվականի հունիսի 12-ի ցարական հրամանագրին, Կնունյանցը «Իսկրա»-ի էջերում գրում էր, որ հայ բնակչությունը չտարավ այդ կամայականությունը, «խստորեն բողոքեց թագադրված ավազակի նոր գիշատչության դեմ և զենքը ձեռքին սկսեց պաշտպանել իր իրավունքները» (Նույն տեղը, էջ 76)։

Դեռևս 1902 թվականին Կնունյանցը Ստ. Շահումյանի, Ա. Զուրաբյանի, Դ. Շահվերդյանի, Ս. Խանոյանի, Ա. Խումարյանի և ուրիշների հետ ստեղծեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը». նրանք հրատարակեցին «Պրոլետարիատ» լրագիրը, արժանանալով Լենինի բարձր գնահատականին։ Կնունյանցը մասնակցել է այդ միության «Մանիֆեստի» մշակմանը և, ինչպես վկայում է Ա. Խումարյանը, գրել նաև հատուկ հոդված «Պրոլետարիատի» համար։

Բոգդան Կնունյանցի Ընտիր երկեր-ը եզրափակում է նրա՝ 1911 թվականի ապրիլի 22-ին գրած մահախոսականը՝ Ագապ Զեյրգաև խորագրով։ Տամբովի նահանգից այդ գյուղացին ապրուստ հայթայթելու համար եկել էր Բաքու, դարձել հեղափոխական, նետվել բանտ, ուր և մեռավ 25 տարեկան հասակում։ Դա տեղի է ունեցել Կնունյանցի աչքերի առաջ, քանի որ ինքն էլ ձերբակալված էր



(8-րդ անգամ) ու նստած նույն Բաիլովյան բանտում. մեկ ամիս հետո ինքն էլ դարձավ ցարիզմի հերթական զոհը՝ դեռ չբոլորած իր 33 տարին։ Մահախոսականը, մոցարտյան «Ռեքվիեմի» նման, նա, ասես, գրել էր նաև իր համար... Ականավոր լենինյան Ստեփան Շահումյանը հրապարակում է մահախոսական Բ. Կնունյանցի մասին և ընդգծում, որ համառուսաստանյան մասշտաբի հեղափոխական ու կուսակցական այդ նշանավոր գործիչը երիտասարդ հասակից մտավ մեծ պայքարի մեջ և վառվեց իր մարտական պոստում, իր գեղեցիկ կյանքն ամբողջությամբ նվիրեց ժողովուրդների ազատագրման գործին. «Այս մահը ծանր վիշտ պատճառեց մոտիկ բարեկամներին ու ընկերներին, որոնք ողբում էին ոչ միայն թանկագին ընկերոջ, այլև այն բարեկամի ծանր կորուստը, որը սիրելի էր իր անձնական բարձր բարոյական մաքրությամբ։ Նրա հիշատակը սուրբ կլինի բոլոր նրանց համար, ովքեր ճանաչում էին նրան» (Երկեր, հ. 2, էջ 212)։ Հենց այդպիսին է հավատարիմ լենինյանի անմար հիշատակը սովետական մարդկանց համար, հիշատակ, որ հավերժացվել է նրա մղած պայքարի հաղթանակով ու մեր աշխարհաշեն գործերով։

Բ. Կնունյանցի երկերը խկությամբ արտացոլում են նրա հավատամքը՝ կոմունիստական աշխարհայացքը, ժողովրդանվեր գործունեությունը...

Ընտիր երկեր-ը ժողովածուն կազմված է խնամքով ու գործիմացությամբ, որում անուրանալի վաստակ ունի պատմական գիտությունների դոկտոր Հ. Գ. Ինճիկյանը։ Պետք է նաև նշել, որ այս ժողովածուն, նախորդի համեմատությամբ, ավելի հարուստ է, լրացված նոր նյութերով։ Ափսոս, որ տպագրության պրոցեսում սպրդել են մի շարք լեզվական վրիպակներ և նույնիսկ սխալներ (տե՛ս էջ, էջ 19, 23, 88, 164, 308, 313, 561, 603, 616 և այլն)։

Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
Պրոֆեսոր

---



digitised by A.R.A.R.@

# Լենինյան դպրոցի դիվանագետը

«ՀԱՅԱՍՏԱՆ» հրատարակչությունը լույս է ընծայել պատմական գիտությունների թեկնածու Հ. Յ. Լիլոյանի աշխատությունը* Լևոն Կարախանի հեղափոխական ու դիվանագիտական գործունեության մասին:

Լևոն Միքայելի Կարախանյանը պատկանում է սովետական դիվանագետների առաջին ջոկատին, որոնց ընտրության ու դաստիարակության գործն անձամբ ղեկավարում էր Վ. Ի. Լենինը: Հեղինակին հաջողվել է արխիվային և այլ աղբյուրների ու նյութերի օգտագործմամբ արժեքավորել Լ. Կարախանի գործունեությունը թե՛ որպես պրոֆեսիոնալ հեղափոխականի՝ մինչև մեծ Հոկտեմբերը, և թե դրանից հետո՝ որպես առաջին սովետական ականավոր դիվանագետներից մեկի:

Լևոն Կարախանյանը ծնվել է 1889 թ. հունվարի 20-ին (փետրվարի 1-ին) Թիֆլիսում, հայտնի փաստաբանի ընտանիքում: Տակավին երիտասարդ հասակում նա դառնում է տեղի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության անդամ, իսկ այնուհետև մասնակցում ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարին՝ Հեռավոր Արևելքում, ուր տեղափոխվել էր նրանց ընտանիքը: Կարախանի հեղափոխական գործունեությունը շուտով հայտնի է դառնում ցարական ոստիկանությանը, որն սկսում է հետապնդել նրան: Կարախանն աքսորվում է Սիբիր:

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Լևոն Կարախանը հանդես է գալիս բոլշևիկյան մամուլի տարբեր օրգաններում, գրում է թռուցիկներ, մերկացնելով իմպերիալիստական պատերազմի զավթողական, թալանչիական բնույթը: Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման ընթացքում նա ընտրվում է բանվորների ու զինվորների դեպուտատների սովետների Համառուսաստանյան կենտգործկոմի անդամ, Պետրոգրադի սովետի նախագահության անդամ և քարտուղար. Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեի կազմակերպիչներից մեկն էր նա:

Սովետական իշխանության հաստատումից հետո Լ. Կարախանը նվիրվում է նորաստեղծ սովետական պետության ամրապնդման գործին, այնպես անհրաժեշտ խաղաղության ապահովմանը: Վ. Ի. Լենինի և Յա. Մ. Սվերդլովի առաջարկով նա նշանակվում է Բրեստ-Լիտովսկում Գերմանիայի հետ կայանալիք առաջին բանակցությունների պատվիրակության անդամ և քարտուղար: Այդ ժամանակվանից սկսած մինչև իր կյանքի վերջը Կարախանն անձնուրաց գործունեություն է ծավալում աշխարհում առաջին սոցիալիստական պետության միջազգային դիրքերի հաստատման ու ամրապնդման համար:

Ինչպես հայտնի է, Բրեստի բանակցությունների ընթացքում, պատվիրակության ղեկավար Լ. Տրոցկին և նրա համախոհները չկատարեցին հաշտության ստորագրման լենինյան ցուցումները և վիժեցրին այն: Մինդեռ Լ. Կարախանը դրսևորեց մեծ կամք ու տոկունություն կուսակցության արտաքին քաղաքականության իրականացման ասպարեզում: Ահա թե ինչու, երբ հաստատվեց Գերմանիայի հետ բանակցություններ վարող նոր պատվիրակությունը, այս անգամ նախորդ կազմից ընտրվեց միայն Լ. Կարախանը: Պատվիրակությունը, Գ. Վ. Չիչերինի գլխավորությամբ, հաջողությամբ կատարեց Վ. Ի. Լենինի, կուսակցության Կենտկոմի առաջադրանքը և ստորագրեց հաշտության պայմանագիր: 1918 թ. սկզբներին Լ. Կարախանը նշանակվում է արտաքին գործերի ժողովրդական կոմիսարիատի կոլեգիայի անդամ, իսկ մարտ ամսից՝ ժողկոմի տեղակալ: Տեղին է նշել, որ հետագայում ևս, նույնիսկ գտնվելով արտասահմանում, նա շարունակում էր զբաղեցնել արտգործժողկոմի տեղակալի պաշտոնը:

Հմուտ դիվանագետի այդ ժամանակվա գործունեության մասին բարձր կարծիք է հայտնել Գ. Վ. Չիչերինը: Վ. Ի. Լենինին նա գրել է. «Ես կարող եմ համարձակորեն ասել, որ մեզ խեղդող պատասխանատու քաղաքական աշխատանքում վերջին ամիսների մեր պայքարը, մի շարք պետությունների հետ հարաբերությունների զարգացման պայմաններում, ուղղակի հերոսական էր: Առհասարակ և ամբողջությամբ վերցրած ես կատարում եմ ավելի ընդհանուր քաղաքական աշխատանք, իսկ նա՝ մանրամասների մի ծով աշխատանք, որոնցից միայն նա կարող է գլուխ հանել և գործերում արագ ու հեշտ կողմնորոշվել, դրանք ընդգրկել իր հիանալի ունակության, հստակ, առողջ դատողության ու հիանալի քաղաքական հոտառության շնորհիվ, որը նրան դարձնում է բացարձակապես անփոխարինելի նշված բնագավառում» (էջ 14):

Լ. Կարախանն զբաղվում էր նաև Անդրկովկասի հարցերով, ջանում ամեն կերպ կասեցնել թուրքական զորքերի արշավանքը Հայաստան և Բաքու: Նա ակտիվ մասնակցել է բողոքի այն նոտաների կազմմանը, որոնք Սովետական Ռուսաստանի կառավարությունը հղում էր Գերմանիային ու Թուրքիային, Բրեստի հաշտության պայմանագրի խախտումների վերաբերյալ: Նա մասնակցել է 1920 թ. Թուրքիայի հետ վարվող բանակցություններին:

Հեղինակը ճիշտ է նշում, որ «մեծ է Լ. Մ. Կարախանի դերը հարևան երկրների՝ հատկապես Արևելքի երկրների հետ սովետական պետության բարեկամական հարաբերություններ հաստատելու գործում» (էջ 22): Նրան է վստահվում արտգործժողկոմատի արևելյան բաժնի ղեկավարությունը: Եթե նկատի ունենանք, թե ինչպիսի ծանր, դժվարին ու ծավալուն աշխատանք և դիվանագիտական ունակություն էր պահանջվում ապահովելու համար Սովետական Ռուսաստանի արևելյան քաղաքականության հաջողությունը, ապա պարզ կդառնա, թե որքան պատասխանատու էր Լ. Կարախանի գործը, որքան մեծ էր վստահությունը նրա նկատմամբ:

Լ. Կարախանն առաջին սովետական դեսպանն էր Լեհաստանում, ուր նա հաջողությամբ պսակեց իր առաքելությունը: Ջենովայի բանակցությունների ընթացքում, Վ. Ի. Լենինի և Գ. Վ. Չիչերինի առաջարկությամբ, վերջինիս բացակայության ընթացքում, Կարախանի վրա է դրվում արտգործժողկոմի պարտականությունները:

Շուտով նա նշանակվում է սովետական առաջին լիազոր-ներկայացուցիչը Չինաստանում, ուր բազմաբեղուն աշխատանք է տանում երկու երկրների հարաբերությունների կարգավորման ու զարգացման ասպարեզում: Չինաստանն այն ժամանակ ապրում էր իր պատմության բարդ ժամանակաշրջանը: Երկիրը բաժանված էր երկու մասի: Բացահայտ հակասովետական դիրք ուներ Հյուսիսային Չինաստանի կառավարությունը: Այստեղ ապաստան էին գտել ու ակտիվ գործում էին հակահեղափոխական բազմաթիվ խմբավորումներ: Նա ծավալում է ակտիվ գործունեություն՝ պարզաբանում ՍՍՀՄ-ի արևելյան քաղաքականությունը: Անուրանալի է Կարախանի դերը Սովետական Միության և Չինաստանի միջև վիճելի հարցերի լուծման պայմանագրի կնքման գործում (31 մայիսի, 1924 թ.): Չինաստանում գտնվելու ընթացքում նա զբաղվել է նաև ՍՍՀՄ-ի և Ճապոնիայի հարաբերությունների նորմալացմամբ: Վերադառնալով Չինաստանից՝ նա շարունակում է վարել արտգործժողկոմի տեղակալի պաշտոնը, զբաղվելով Սովետական Միության արևելյան քաղաքականության, հատկապես հարևան Իրանի և Թուրքիայի հետ հարաբերությունների զարգացման հարցերով:

1934—1937 թթ. Լ. Կարախանը սովետական դեսպանն է Անկարայում: Այդ այն ժամանակ էր, երբ երկու երկրների միջև հաստատվեցին և զարգացան առևտրատնտեսական, կուլտուրական և այլ երկկողմանի շահավետ կապեր: Անհամեմատ ծավալվեց սովետաթուրքական առևտուրը: Սովետական տնտեսական ու տեխնիկական օգնությամբ Թուրքիայում կառուցվում էին երկու խոշոր տեքստիլ կոմբինատներ Կայսերիում (շահագործման է հանձնվել 1936 թ) և Նազիլիում, որոնք մինչև օրս էլ ո՛չ միայն Թուրքիայի, այլև ամբողջ Մերձավոր և Միջին Արևելքի ամենախոշոր պետական տեքստիլ ձեռնարկություններն են: Բայց այդ նույն ժամանակ թուրքական որոշ կառավարող շրջաններ ձգտում էին հեռանալ ՍՍՀՄ-ի հետ բարիդրացիական հարաբերություններից և մերձենալ Արևմուտքի երկրներին: Թուրքական ազգային բուրժուազիայի և խոշոր հողատիրության դասակարգային դիրքերի ամրապնդման և երկրի կառավարող շրջանների ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում ռեակցիոն ձգտումների արտահայտությունն էր այդ: Թուրքիայի արևմտյան կողմնորոշման տենդենցները միաժամանակ պայմանավորվում էին Եվրոպայում իմպերիալիզմի և ռեակցիայի դիրքերի հետագա ամրապնդմամբ և ֆաշիստական Գերմանիայի Թուրքիա ներթափանցելու ուժեղացմամբ: Բայց, չնայած այդ օբյեկտիվ դժվարություններին, ցուցաբերելով մեծ հմտություն ու տոկունություն, Լ. Կարախանը կարողանում է պահպանել հարաբերությունների նորմալ ընթացքը, և այդպես՝ մինչև Թուրքիայից հեռանալը (1937 թ. մայիս):

Մինչև իր կյանքի վերջը նա հավատարիմ մնաց լենինյան կոմունիստական կուսակցությանը, սովետական ժողովրդին ու սոցիալիստական հայրենիքին:

Լ. Կարախանը հմուտ դիվանագետ էր՝ իրավաբանական բարձրագույն կրթությամբ, արվեստի ու գրականության քաջ գիտակ: Դիվանագիտական հաջողություններին մեծապես նպաստել են նրա՝ որպես պրոֆեսիոնալ հեղափոխականի՝ կուսակցականությունը և անձնական հմայքը: Նրա գործունեությունն իր արժանի տեղն է գրավում ՍՍՀՄ արտաքին քաղաքականության պատմության մեջ:

Այս աշխատությունը Լ. Կարախանի գործունեության առաջին հանգամանալի ուսումնասիրությունն է: Այն երախտագիտության խոսք է սովետական ականավոր դիվանագետի անմոռաց հիշատակին:

**Ռ. Պ. ԿՈՆԴԱԿՋՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

* *Հ. Յ. Լիլոյան, «Սովետական ականավոր դիվանագետը», «Հայաստան» հրատ., 1978:*



digitised by A.R.A.R.@

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՓԱՌՔԸ

**1829 ԹՎԱԿԱՆԻ** փետրվարի 11-ին Անգլիայի կողմից կաշառված պարսկական խավարամիտների հրեշավոր դավադրությամբ Թեհրանում սպանվեց Պարսկաստանում Ռուսաստանի լիազոր մինիստր Ալեքսանդր Սերգեևիչ Գրիբոյեդովը: Հանձին նրա Ռուսաստանը կորցրեց տաղանդավոր գրողի և պետական ականավոր գործչի, իսկ Անդրկովկասի ժողովուրդները՝ լավագույն բարեկամին, որն այնքան շատ բան էր արել իրենց խաղաղ գոյության ապահովման համար:



Ալեքսանդր Սերգեևիչ Գրիբոյեդով. նրանով է սկսվում XIX դարի ռուս գրականությունը, որը մարդկության գեղարվեստական արժույթների գանձարանում գրավում է առաջին տեղերից մեկը: Նրա Խելքից պատուհաս հանճարեղ կատակերգությունը, որն առավել ամբողջությամբ ու խորությամբ ներկայացրել է Ռուսաստանի գաղափարական կյանքի պատկերը դեկաբրիստական շարժման ձևավորման շրջանում, վիթխարի ազդեցություն է գործել ո՛չ միայն ռուսական գրականության, այլև համաշխարհային ողջ հոգևոր մշակույթի վրա: Գրիբոյեդովի կերտած կերպարները ժամանակակից մարդու հոգևոր աշխարհի անկապտելի մասն են. նրանք դարձել են հասարակ անուն՝ ինչպես պատմական, նույնպես և մարդու սոցիալական վարքագծի բնութագրման առումով: Իսկ ինքը՝ Գրիբոյեդովը, նրա հասարակական ու քաղաքացիական գործունեությունն այսօր ևս հայրենիքին անձնվիրաբար ծառայելու, հումանիզմին, լուսավորությանը, ժողովուրդների բարեկամության գաղափարներին հավատարմության վառ օրինակ են:

**Ա. Ս. ԳՐԻԲՈՅԵԴՈՎԸ** ծնվել է 1795 թ. հունվարի 15-ին, Մոսկվայում, սպայի ընտանիքում: Ընտանիքում ստանալով բազմակողմանի կրթություն, 1802 թ. նա ընդունվում է Բլագորոդնի պանսիոնը, իսկ 1806 թ.՝ Մոսկվայի համալսարանը: Ուսման վեց և կես տարիների ընթացքում նա անցնում է բանահյուսության, իրավաբանական և ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետների դասընթացները: Իր հասակակիցների մեջ նա աչքի էր ընկնում զարգացածությամբ, մի քանի եվրոպական և հին լեզուների իմացությամբ, բազմակողմանի տաղանդով, երաժշտական արտակարգ ընդունակությամբ: Ուսանողական տարիներին նա մտերմացավ ապագա դեկաբրիստներ Ն. Մ. և Ա. Զ. Մուրավյովների, Պ. Դ. Յակուշկինի, Ի. Ա. Յակուբովսկու և այլոց հետ, բարեկամացավ Պ. Յա. Չաադաևին, համակվեց այն խոհերով ու տրամադրություններով, որոնցով ապրում էր առաջադեմ ազնվականական երիտասարդությունը:

Նապոլեոնի դեմ մղված Հայրենական պատերազմի ժամանակ՝ 1812 թվականին, հրաժարվելով մոտակա գիտական կարիերայից, Գրիբոյեդովը կամավոր մեկնում է բանակ: Եվ, չնայած այն զորամասը, ուր նա ծառայում էր,



չէր մասնակցում ռազմական գործողություններին, սակայն ապագա գրողը խորապես ըմբռնեց ռուս ժողովրդի հոգեկան ուժն ու ազգային ինքնագիտակցությունը, իր աչքով տեսավ կալվածատերերի և չինովնիկների կողմից մոռացված ու նվաստացված հասարակ գեղջուկի հերոսությունը, անձնուրացությունը, հոգու վեհությունն ու բարոյական անաղարտությունը:

Զինվորական ծառայության հետ են կապված և Գրիբոյեդովի առաջին հրապարակումները, որոնք լույս են տեսել «Вестник Европы» ամսագրում— Նամակ Բրեստ-Լիտովսկից հրատարակչին սպայական տոնախմբությունը նկարագրող թղթակցությունը և Հեծելազորային ռեզերվների մասին հոդվածը՝ տոգորված հպարտությամբ ռուսական բանակի համար, որը «թանկ գնով ձեռք բերված հաղթանակներից հետո, փյունիկի պես հառնեց մոխրից, վաստակելու համար նոր անթառամ դափնիներ՝ անդրհռենոսյան դաշտերում և ցույց տալու իր աՀեղ դեմքը հակառակորդի մայրաքաղաքում»

**1816** թ. Գրիբոյեդովը պաշտոնաթող է լինում և հաստատվում է Պետերբուրգում, իսկ մեկ տարի անց ծառայության է մտնում Արտաքին գործոց կոլեգիայում, ուր այդ ժամանակ ծառայում էին Ա. Ս. Պուշկինը և ապագա դեկաբրիստ Վ. Կ. Կյուխելբեկերը: 1815—1817 թթ. Գրիբոյեդովը հանդես է գալիս որպես դրամատուրգ, գրում է Երիտասարդ ամուսինները մեկ գործողությամբ կատակերգությունը, Ա. Ա. Ժանդրի հետ մեկտեղ՝ Կեղծ անհավատարմություն, Պ. Ա. Կարենինի հետ՝ Ուսանողը պիեսները: Առաջին երկուսը նմանողական բնույթի են և հեռու են ռուսական կյանքից, իսկ ազնվականական միջավայրը իր նորտատիրական բարքերով ներկայացնող երրորդ պիեսում արդեն զգացվում է ապագա ռեալիստ-երգիծաբանը: Մայրաքաղաքում Գրիբոյեդովը ո՛չ միայն տարվում է աշխարհիկ զվարճություններով, այլև ծնունդ առնող դեկաբրիզմի մթնոլորտում ավելի ու ավելի է խորհրդածում Ռուսաստանի «հիմնական խոցերի» մասին— ժողովրդի ընդարմացածության, նրա ճորտական վիճակի, զինվորների նկատմամբ դաժան վերաբերմունքի, ամենուր տիրող կաշառակերության ու թալանի, ընդհանրապես՝ մարդու նկատմամբ բացահայտ անհարգալիրության մասին: Գրիբոյեդովն ընդունվում է «Միավորված բարեկամների» մասոնական ժողովարանը, որի անդամ էր և Պեստելը. հավանաբար, վերջինս իրազեկ էր քաղաքական գաղտնի կազմակերպությունների գոյությանը: Հետագայում Գրիբոյեդովն ասել է, որ 1818 թ. ինքը «ճիշտ այնպիսին էր, ինչպիսին դեկաբրիստ Ալեքսանդր Օդոևսկին»: Նա մտածում էր ստեղծել ժամանակակից հասարակության արատները բացահայտող քաղաքացիական-մերկացուցիչ, ռեալիստական պիես:

Գրիբոյեդովի առօրյա կյանքի ընթացքը Պետերբուրգում խախտեց նրա ազնվական ընկերների երկու մենամարտը, որին մասնակցեց և ինքը: Մեռավ մենամարտողներից մեկը՝ Վ. Վ. Շերեմետևը, և այդ ծանր ազդեց Գրիբոյեդովի վրա՝ անհնար դարձնելով նրա Պետերբուրգում մնալը:

Այդ պայմաններում Գրիբոյեդովին առաջարկեցին դիվանագիտական աշխատանքի մեկնել ԱՄՆ կամ Պարսկաստան: Նա ընտրեց վերջինը և 1818 թ. օգոստոսին ճանապարհ ընկավ՝ որպես ռուսական ներկայացուցչության քարտուղար: Մինչ այդ նա հասցրեց կարդալ Արևելքի պատմությանը, տնտեսությանը և աշխարհագրությանը վերաբերող մատչելի ողջ գրականությունը, սկսեց ուսումնասիրել պարսկերենն ու արաբերենը: Հոկտեմբերի 21-ին նա հասավ Թիֆլիս, ուր ծանոթացավ գեներալ Ա. Պ. Երմոլովի հետ: Ժամանակակիցները «Կովկասի կառավարիչ» էին անվանում վերջինիս, որն այնպես բարձր էր գնահատում Գրիբոյեդովի խելքն ու ընդունակությունները: 1819 թ. հունվարին ռուսական ներկայացուցչությունը ճանապարհվեց Պարսկաստան. չորս օր Երևանում մնալուց հետո փետրվարի կեսերին հասան Թավրիզ՝ Պարսկաստանի արտաքին քաղաքականությունը վարող, թագաժառանգ Աբաս-Միրզայի աթոռանիստը: Գրիբոյեդովի Ուղեգրությունները (մտերիմ ընկերոջը՝ Ս. Ն. Բեգիչևին ուղղված նամակների ձևով) ցույց են տալիս, թե որքա՜ն ուժեղ ազդեցություն գործեցին նրա վրա Անդրկովկասի և Հյուսիսային Իրանի բնությունը, հին պատմության և ճարտարապետության հուշարձանները, տեղական կենցաղն ու բարքերը և հատկապես շահի իշխանության տակ գտնվող հայերի և իրանցիների ճնշված, աղքատ, իրավազուրկ վիճակը:

Չնայած լիազոր դեսպանը Ս. Ի. Մազարովիչն էր, սակայն Գրիբոյեդովին էր հանձնարարված կատարումը կարևոր մի գործի— 1813 թ. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ գերի ընկած ռուս զինվորների հայրենադարձությունը: Հաղթահարելով շահական բարձրաստիճան պաշտոնյաների հարուցած բոլոր խոչընդոտները, նա համառությամբ ու հաստատակամությամբ հասավ իր նպատակին: 1819 թ. սեպտեմբերին գերությունից ազատվածների գլուխ անցած, հասավ Վրաստան, ապա 1820 թ. հունվարին վերադարձավ



digitised by A.R.A.R.@

Թավրիզ, ճանապարհին մտնելով Էջմիածին և տեսակցելով հայոց կաթողիկոսի հետ:

Գրիբոյեդովի համար ծանր էին ծառայությունը Մազարովիչի՝ այդ անմաքրաբարո, սահմանափակ մարդու ենթակայությամբ, միօրինակ կյանքը Պարսկաստանում, ուր տիրում էին «կույր ստրկությունն ու կույր իշխանությունը», «կտրատված ականջներն ու գավազանը»: Բայց Թավրիզում լինելը նաև օգտակար եղավ նրա համար. նա շատ էր կարդում և սովորում էր, իսկ գլխավորը՝ այստեղ նա սկսեց գրել Խելքից պատուհասը: Միայն 1821 թվականի վերջին Գրիբոյեդովին հաջողվեց գալ Թիֆլիս՝ հրահանգներ ստանալու սկսվող պարսկա-թուրքական պատերազմի առնչությամբ: Բայց Երմոլովը նրան պահեց Թիֆլիսում՝ նշանակելով «արտասահմանյան վարչության» քարտուղար:

Թիֆլիսում Գրիբոյեդովը հանդիպեց «գաղտնի ընկերությունների» շատ անդամների, որոնք ծառայում էին Կովկասյան հատուկ կորպուսում: Այդ հանդիպումները խթանեցին նրա դեկաբրիստական հայացքների ու տրամադրությունների զարգացմանը: Ծառայության բերումով նա շփվում է արևելյան լեզուների գիտակներ, փոխգնդապետ Միրզա Ադրիամ Ենիկոլոպովի, Ադրբեջանի պատմությանը նվիրված աշխատության հեղինակ Աբասկուլի Բաքիխանովի, Թումանյան եղբայրների և այլոց հետ, լինում Վ. Գ. Մադաթովի, Պ. Ն. Հախվերդովայի տներում: Վերջինիս մոտ դաստիարակվում էր նրա ապագա կինը՝ Նինա Ճավճավաձեն. հաճախակի լինում է Ցինանդալիում Նինայի հոր՝ Ա. Գ. Ճավճավաձեի կալվածքում, ծանոթանում վրաց գրականության ականավոր գործիչներ Գ. Օրբելիանիի, Գ. Էրիսթավիի և այլոց հետ (տե՛ս И. Ениколопов, Грибоедов и Восток, Ереван, 1954, стр. 41—43): Թիֆլիսում Գրիբոյեդովն ավարտում է Խելքից պատուհասի առաջին երկու գլուխները:

1823 թ. մարտին Գրիբոյեդովն ստանում է երկարատև արձակուրդ և գալիս Մոսկվա, ամառն անցկացնում ընկերոջ՝ Ս. Ն. Բեգիչևի՝ Տուլայում գտնվող կալվածքում, ուր և գրում է Խելքից պատուհասի 3-րդ, 4-րդ գործողությունները և հիմնականում ավարտում իր կատակերգությունը: 1824 թ. հունիսին նա մեկնում է Պետերբուրգ, ուր վերամշակում է կատակերգությունը, կատարում որոշ փոփոխություններ և կարդում ընկերներին: Բայց այն տպագրելու կամ բեմադրելու փորձերն ապարդյուն են անցնում: Հաջողվում է միայն 1825 թ. «Русская Талия» ալմանախում հրապարակել սոսկ առաջին գործողության մի քանի պատկեր և երրորդ գործողությունը:

Պետերբուրգում Գրիբոյեդովը դեկաբրիստների շրջապատում է. նա հաճախում է Ռիլեևի կազմակերպած «ռուսական նախաճաշերին», բարեկամանում Ա. Բեստուժևի, դեկաբրիստ-բանաստեղծ Ա. Օդոևսկու հետ, հանդիպում Հյուսիսային միության այնպիսի ականավոր գործիչների, ինչպիսիք են՝ Ս. Պ. Տրուբեցկոյը, Գ. Պ. Օբոլենսկին և ուրիշներ, ինքն էլ, անշուշտ, իրազեկ դառնում նրանց պլաններին ու մտադրություններին: Ձևականորեն Գրիբոյեդովը դեկաբրիստների կազմակերպության անդամ չէր, բայց նրանց նման իրեն կոչում էր «ցարի ախոյան», համամիտ էր սահմանադրության գործադրմանը, անհրաժեշտ էր համարում ճորտատիրական իրավունքի վերացումը, պաշտպանում ռուսական կուլտուրայի ազգային յուրօրինակության գաղափարը, գրատպության ազատությունը: Միաժամանակ Գրիբոյեդովը չէր հավատում, որ զինված դավադրության միջոցով դեկաբրիստները կարող են հասնել իրենց նպատակին, որոշ չափով նա հասկանում էր ազնվական հեղափոխականների և ազատագրված ճորտերի տարանջատությունը, նրանց կտրվածությունը ժողովրդից («սարսափելի՜ հեռու են... ժողովրդից»), այն, ինչը Վ. Ի. Լենինը բնութագրել է որպես ազնվական հեղափոխականների հիմնական թուլություն: Իհարկե, Գրիբոյեդովի այս տարակույսները կարելի է համարել նրա քաղաքական չափավորության արտահայտություն (տե՛ս С. М. Петров. А. С. Грибоедов, М., 1950, стр. 25), այնուամենայնիվ, դրանք նրա քաղաքական հեռատեսության վկայություններ են:

1825 թ. գարնանը, իր աշխատավայրը վերադառնալիս, նա եղավ Կիևում, ուր հանդիպեց դեկաբրիստների Հարավային կազմակերպության անդամներին. ինչպես ենթադրում է Մ. Վ. Նեչկինան, նրանք ցանկանում էին Գրիբոյեդովի միջոցով հասնել այն բանին, որ Երմոլովը և Կովկասյան կորպուսը մասնակցեն ապստամբությանը, սակայն Գրիբոյեդովը հրաժարվեց այդ հանձնարարությունից: Կովկասում Գրիբոյեդովն իմացավ 1825 թ. դեկտեմբերի 14-ի ապստամբության մասին. նրան սաստիկ հուզեց դեկաբրիստներին պատահած աղետը: Գրիբոյեդովին կասկածում էին գաղտնի կազմակերպության անդամ լինելու մեջ, և 1926 թ. հունվարի 22-ին, «գերագույն հրամանով» հատուկ սուրհանդակի կողմից նա ձերբակալվում և բերվում է Պետերբուրգ: Հավանաբար, Երմոլովն զգուշացրել էր նրան այդ ձերբակալության մասին, և Գրիբոյեդովը հասցրել էր ոչնչացնել վտանգավոր թղթերը: Հարցաքննությունների ժամանակ Գրիբոյեդովը կտրականապես հայտարարում էր, որ ինքը



«գաղտնի կազմակերպության չի պատկանել և չի էլ կասկածել դրա գոյության մասին»: Իրենց ցուցմունքներում բավական շիտակ դեկաբրիստները ևս նրա մասին դատապարտելի ոչինչ չէին ասում, ակնհայտորեն պաշտպանելով նրան (ինչպես և Պուշկինին) ռեպրեսիաներից: Նիկոլայ I-ը վճռեց ազատել Գրիբոյեդովին. այդ բանում մեծ դեր խաղաց Երմոլովի և թագավորի սիրելի գեներալ Ի. Ֆ. Պասկևիչի միջնորդությունը: 1826 թ. հունիսի 2-ին Գրիբոյեդովն ազատ արձակվեց և սեպտեմբերին վերադարձավ Կովկաս:

Հույժ ծանր ապրեց Գրիբոյեդովը դաժան դատաստանը դեկաբրիստների նկատմամբ: Ամեն կերպ նա ջանում էր օգնել, օգտակար լինել նրանց: Այսպես, Երմոլովի առաջ նա միջնորդեց Կովկաս աքսորված դեկաբրիստ Ա. Ա. Դոբրինսկու համար. օգտվելով Պասկևիչի հետ (որ շուտով նշանակվեց Կովկասյան կորպուսի հրամանատար) ունեցած ազգակցական կապից, որքան կարող էր, թեթևացրեց, օրինակ, Պյոտր և Պավել Բեստուժևների, ապա Ալեքսանդր Բեստուժևի և շատերի վիճակը: Ըստ Պյոտր Բեստուժևի հիշողությունների՝ «չնայած հալածականների հետ ծանոթության վտանգավորությանը, նա ծածուկ ու բացահայտ ջանում էր օգտակար լինել: Բնավորության ազնվությունն ու վեհությունը լիովին դրսևորվեցին այն ժամանակ, երբ նա համարձակվեց թագավորի հետ խոսել հօգուտ այն մարդկանց, որոնց անունից իսկ գունատվում էր վիրավորված տիրակալը...»:

Հավատարմությունը դեկաբրիստների գաղափարներին դրսևորվել է և Գրիբոյեդովի գրական ստեղծագործության մեջ: Նրա Վրացական գիշեր (1826—1827) ողբերգությունը, որի հենքը վրացական ժողովրդական ավանդությունն է, ամբողջովին տոգորված է հակաճորտատիրական մտքերով: Այդ ժամանակ է նա մտահղացել և մի այլ՝ Ռադոմիստ և Զենոբիա անավարտ ողբերգությունը, որի նյութը հին Հայաստանի կյանքից է. դրա առանցքը պետք է լիներ արքայական բռնակալության դեմ մեծատոհմիկ աստիճանավորների դավադրությունը: Ողբերգության պլանում Գրիբոյեդովը նշում է. «Ժողովուրդը չի մասնակցում նրանց գործերին. այն կարծես գոյություն չունի»:

Գրիբոյեդովի «դեկաբրիզմը» արտացոլվել է նրա Խելքից պատուհաս անմահ կատակերգության մեջ, որի թեմայի հիմքը ո՛չ միայն սոցիալ-քաղաքական պայքարի գլխավոր կոնֆլիկտն է Հայրենական պատերազմին հաջորդած ժամանակվա Ռուսաստանի, այլև Արևմտյան Եվրոպայի շատ երկրների հասարակության առաջադեմ, պրոգրեսիվ ուժերի և ֆեոդալական ճորտատիրական ռեակցիայի բախումը: Խելքից պատուհաս-ում ներկայացված են ռուսական հասարակության երկու հակադիր լագերներ— ռեակցիոն ազնվականության, ճորտատիրական երկրի պաշտպանների լագերը՝ հանձին Ֆամուսովի, Սկալոզուբի և այլոց ու առաջադեմ ազնվականական երիտասարդության՝ հանձին Չացկու, որի կողքին, դեռևս աննշմարելի, երևում են և նրա համախոհները:

Ֆամուսովի և նրա նմանների իդեալը «անցած դարն» է՝ «հնազանդության ու սարսափի դարը»— Եկատերինա II-ի ժամանակները, ուժեղների առաջ սողալու, թույլերին ճնշելու և նվաստացնելու վրա խարսխված բարոյականությամբ: Այդ իդեալն է կանխորոշում նրանց պորտաբուծությունն ու շահատենչությունը, ստորաքարշությունն ու գոռոզամտությունը, խավարամոլությունն ու բարոյական անկումը: Ֆամուսովների աշխարհը կազմված է «հայտնի խարդախներից», «չնչին սինլքորներից», «երդվյալ սրիկաներից», «ջադու պառավներից», կեղծ բարեպաշտներից ու մատնիչներից. նրանց միացնում է անասնական ատելությունը «ազատ կյանքի», կուլտուրայի ու լուսավորության, ամեն մի անկախ մտքի ու զգացմունքի նկատմամբ: Ինչպես Գերցենն է ասել, Խելքից պատուհաս-ում Գրիբոյեդովի պատկերած այս բիրտ ու անարգ աշխարհում ապրում են «ուրվականները պաշտոնաթող ազնվազարմ բարձրաստիճանավորների, որոնք շքանշաններով ու աստղերով քողարկում են անընդունակության, տգիտության, փառամոլության, քծնանքի, ամբարտավանության, ստորության և նույնիսկ թեթևսոլիկության անհատակ անդունդը. և այդ ննջեցյալների շուրջը, որոնց մոռացել են թաղել, իրենց գոյությունը քարշ տվող կլիենտների, բանսարկուների, ձրիակերների ողջ աշխարհն է՝ համակված ձևապաշտությամբ, էտիկետով, զուրկ ամեն տեսակ հանրային շահից»: Այսպիսին են՝ Ֆամուսովը— խավարամոլ, կեղծ բարեպաշտ, բռնակալ, «այս աշխարհի ուժեղների» առաջ եռատակ ծալվող և թույլերին ճնշող, իր ճորտական Սիբիրով սպառնացող. Սկալոզուբը— ազատ մտքի երդվյալ թշնամի, բութ, ինքնասիրահարված ու տգետ, որ մարմնավորում էր ռեակցիոն «պրուսականության» ոգին. Մոլչալինը— բյուրոկրատ ու քծնող, «ստորաքարշ ու գործարար», տակավին մանր սրիկա, որը չի համարձակվում կարծիք ունենալ, այսպիսին է նրա՝ «կյանքի լակեյական փիլիսոփայությունը»:

Նախ՝ հաճոյանալ բոլոր մարդկանց անխտիր—

Տիրոջս, որի մոտ կապրեմ,
Պետիս, որի հետ կաշխատեմ:



digitised by A.R.A.R.@

Այդպիսիք են և մոսկովյան գոռոզ, պառավ տիրուհին՝ Խլյոստովան՝ իր շնիկով, սևամորթ աղջնակով, որին մարդ չի համարում. Զագորեցկին՝

Աշխարհիկ մարդ,
Հայտնի խաբեբա ու նենգ:

Ոստիկանության գործակալ ու մատնիչ Ռեպետիլովը՝ «ազնվական հասարակության հոգին— խեղկատակ, չարախոս ու շաղակրատ, որն իրեն լիբերալ է ներկայացնում, իսկ իրականում դատարկաբան է. Պլատոն Միխայլովիչ Գորիչը, որ մի ժամանակ մտերիմ էր Չացկու հետ, իսկ հետո դարձավ քաղքենի. և Տուգոուխովների իշխանական ընտանիքը, և՛ իշխանուհի Խրյումինան, և՛ կատակերգության մյուս բոլոր հերոսները, որոնք մոսկովյան ազնվականական հասարակության «ծաղիկն» են: Նրանք իրենց համարում են ռուս ժողովրդի ընտրյալ ներկայացուցիչներ, հայրենասերներ, պետության սյուներ, բայց իրականում իրենց կյանքն անպատակ, աշխարհիկ վայելքներում, դավերով և բանսարկություններով անցկացնող էգոիստներ են, պորտաբույծներ: Խելքից պատուհաս-ում Գրիբոյեդովի կերտած բացասական կերպարների շարքը, պատռելով արտաքին բարեբաստության ու ազնվության դիմակը, ներկայացնում է իշխող դասակարգի իրական, նողկալի պատկերը:

Չացկին հակադրված է պահպանողական ճորտատերերին, ազատության ու լուսավորության թշնամիներին: Բնորոշելով Խելքից պատուհաս-ի կոնֆլիկտի բովանդակությունն ու գաղափարական էությունը՝ Գրիբոյեդովը գրել է. «...իմ կատակերգությունում 25 հիմարներ են և մի ողջախոհ մարդ. և այդ մարդը, բնականաբար, հակասության մեջ է հասարակության, իր շրջապատի հետ, ոչ ոք նրան չի հասկանում, ոչ ոք ներել չի կամենում այն բանի համար, որ նա փոքր-ինչ բարձր է մյուսներից»: Չացկու կերպարի միջոցով Գրիբոյեդովը կերտել է ժամանակի դրական հերոսին, որը մարմնավորում է հասարակական վարքագծի, քաղաքացիական բարոյականության նոր նորմերը: Ինչպես իրավամբ նշում է Վլ. Օռլովը, «պարտքի գաղափարի և այդ գաղափարի գործնական իրականացման նրա ըմբռնումը, զայրույթն ու ծաղրը, մերկացնող, սուր տոնը— այդ ամենը արակչեևյան ժամանակաշրջանի հասարակական ու քաղաքական կեցության պայմաններում ստացել է ագիտացիոն բնույթ և բարոյական համոզմունքի վիթխարի ուժ»: Ֆամուսովների և մոլչալինների ստրկական բարոյախոսությանը՝ «դեմքերին» և ոչ գործին ծառայելուն, Չացկին հակադրում է աշխատանքը հանուն հայրենիքի պատվի ու բարօրության, քաղաքացու և հայրենասերի պարտականությունների խոր ըմբռնումը:

Չացկին՝ իր «վեհ մտքերով» «լիբերալիստ» է և ազատախոհ, 1811—1820 թթ. ազնվական երիտասարդության ամենալուսավորյալ և առաջադեմ մասի ներկայացուցիչը, երիտասարդություն, որից սերել էին դեկաբրիստները: Եվ, չնայած Խելքից պատուհաս-ում Չացկին ներկայացված է միայնակ խռովարար, բայց ունի ընկերներ ու բարեկամներ, որոնց անունից նա համարձակ քննադատում, մերկացնում է ճորտատիրական աշխարհը: Նրանք, ինչպես արտահայտվել է դեկաբրիստ Մ. Ի. Մուրավյով-Ապոստոլը, «1812 թվականի երեխաներն են», երիտասարդ Ռուսաստանը, ըստ Գերցենի՝ «հերոսների այն փաղանգը», որը գիտակցաբար նետվեց ինքնակալության դեմ մղվող պայքարի հորձանուտը՝ հանուն լավագույն ապագայի: Չացկին աչքի է ընկնում հստակ, սուր, իրերի բուն խորքը թափանցող մտքով, որը և, ըստ էության, ֆամուսովյան հասարակության հետ ունեցած բախման գլխավոր պատճառն է: Շրջապատողների աչքում այդ խելքը հերոսին դարձնում է սկզբում «տարօրինակ մարդ», «հիմար», իսկ վերջում՝ ուղղակի «խելագար»: «Դե՛, ի՞նչ, չե՞ս տեսնում, նա խելքը թռցրել է»,— ասում է Ֆամուսովը վարագույրի հետևից, որպես պատասխան Չացկու մերկացուցիչ ճառի: Այդ անսանձ վախը խելքից՝ բացատրվում է նրանով, որ ֆամուսովներն այն նույնացնում են «ազատախոհության», օրենքով ու ավանդաբար սրբացված կարգը կործանելու ձգտման հետ:

Գրիբոյեդովն իր կատակերգությունն սկզբում վերնագրել է «Վա՜յ խելքին»: Բռնակալության, քարացածության, խավարամտության դեմ պայքարելու կոչված Չացկու խելքը նրա համար դառնում է դժբախտություն, պատուհաս՝ «հիմարներից» բաղկացած հասարակության մեջ: Նա պատուհասվում է իր խելքի պատճառով, որն ուժեղ է էգոիստական, բանականությունից զուրկ աշխարհը քննադատելիս, բայց և թույլ՝ իրականության վերափոխման համար մղվող պայքարի ճիշտ ուղիներ ու մեթոդներ առաջադրելիս: Որպես լուսավորության դարաշրջանի մարդ, Չացկին իր ժամանակակից հասարակության թերությունների հիմնական պատճառը համարում է «Օչակովսկիների և Ղրիմի նվաճման ժամանակների» նախապաշարումների ու դատողությունների թագավորությունը, կեղծ դաստիարակությունը և այլն: Նրան թվում է, թե ամեն ինչ կարելի է շտկել ազնիվ ու մարդասիրական գաղափարներ քարոզելով: Կյանքը դաժանորեն հարվածեց



Չացկու այս երազանքներին ու հույսերին, ցույց տալով դրանց անիրականանալիությունը, իդեալիստական բնույթը, չնայած միաժամանակ համոզիչ կերպով բացահայտեց ժողովրդի նկատմամբ կարեկցանքով համակված այդ առաջավոր, պրոգրեսիվ գաղափարների վիթխարի նշանակությունը: Չնայած գլխավոր հերոսի դրամային՝ հասարակության հետ ունեցած անձնական հարաբերություններում, Սոֆիայի նկատմամբ տածած սիրո ձախողմանը, նա հաղթող է դուրս գալիս:

Գրիբոյեդովի կատակերգությունը ժամանակակիցներին հիացրեց ո՛չ միայն գաղափարական հարուստ բովանդակությամբ, հանրային կեցության բազում կարևորագույն հարցերի արծարծմամբ, այլև գեղարվեստական ձևով, մինչ այդ չտեսնված կենդանի խոսքով, բանաստեղծական լեզվի բնականությամբ: Խելքից պատուհաս-ում Գրիբոյեդովը հաղթահարեց գործող անձանց բնութագրման միագծությունը, որը հատուկ էր ռուս գրականության զարգացման նախորդ՝ կլասիցիզմի փուլին, հաստատելով նրանց կերտման ռեալիստական սկզբունքը: Նրանցից յուրաքանչյուրը հանդես է գալիս և՛ որպես տիպ, և՛ անհատականություն՝ բարոյական ու հոգեբանական սեփական կերպարով, պայմանավորված տիպական հանգամանքներով՝ հերոսի դաստիարակությամբ և նրան շրջապատող հասարակական միջավայրով: Սքանչելի է կատակերգության լեզուն: Պ. Ա. Գոնչարովը իր Միլիոն տառապանք հոդվածում գրել է. «Աղը, էպիգրամը, խոցող ծաղրը, խոսակցական այդ բանաստեղծությունը, թվում է երբեք չեն մեռնի, ինչպես և ինքը՝ դրանց մեջ սփռված սուր և խոցող, ռուսական աշխույժ միտքը...»: Խելքից պատուհասի բանաստեղծությունների մասին Պուշկինը նկատել է, որ դրանց «կեսը պետք է դառնա ասույթ»: Եվ, իրոք, կատակերգության շատ արտահայտություններ դարձել են ասույթներ ու ասացվածքներ և այնպես են մտել ռուս ժողովրդի կենցաղի ու խոսքի մեջ, որ դրանց ծագումը չի հիշվում:

Խելքից պատուհասը ջերմորեն ընդունեցին ժամանակակիցները և շուտով այն դարձավ ողջ մտածող Ռուսաստանի սեփականությունը: Կատակերգությունը գործեց «աննկարագրելի ազդեցություն,— գրել է Պուշկինը,— և Գրիբոյեդովին միանգամից դրեց մեր առաջին պոետների շարքում»: Անտարակույս, կատակերգության՝ դեկաբրիզմի սոցիալ-քաղաքական գաղափարներով համակված սուր երգիծանքը, դրա հասարակական-քաղաքական հնչեղությունը չէին կարող չզայրացնել Նիկոլայ I-ին, որը գահ էր բարձրացել դեկաբրիստների պատժից ու աքսորից հետո: Ո՛չ միայն Սկալոզուբի կերպարում երևում էր նոր միապետը, այլև ֆամուսովների ու մոլչալինների՝ սեփական դատողությունը չունենալու ստրկական հոգեբանության դեմ մղած Չացկու ողջ պայքարը՝ ուղղված Նիկոլայ I-ի՝ «ենթարկվել և ոչ թե դատել, իրեն պահել սեփական կարծիքները» սկզբունքի դեմ: Հավանաբար, այդ ևս պատճառ դարձավ մայրաքաղաքից Գրիբոյեդովի հեռացման. նա հաստատվեց Կովկասում, ուր շուտով ուղարկվեցին աքսորյալ դեկաբրիստները՝ արյամբ քավելու իրենց «մեղքը»:

1826 թ. սեպտեմբերի սկզբին Գրիբոյեդովը հասավ Թիֆլիս և անցավ իր պաշտոնական պարտականությունների կատարմանը: Արևելքում հասունանում էին նոր իրադարձություններ. պարսկական գահաժառանգ Աբաս-Միրզան, անգլիացիների օգնությամբ լավ զինված բանակ կազմելով, առանց պատերազմ հայտարարելու, 1826 թ. հուլիսի 16-ին ներխուժեց Անդրկովկաս: Ռուսական սակավաթիվ սահմանապահ ջոկատները, հանկարծակիի գալով, ստիպված եղան նահանջել: Պարսկական զորքերը գրավեցին Շիրակը, Լոռին, այժմյան Ադրբեջանի մեծ մասը և սպառնում էին Թիֆլիսին: Բայց սեպտեմբերի սկզբին արդեն Աբաս-Միրզայի բանակը կասեցվեց, ապա ջախջախվեց Շամխորի և Ելիզավետպոլի մոտ և թողեց գրաված տարածությունները: Այդ ժամանակամիջոցում Կովկասի կորպուսի հրամանատարի և «Վրաստանի գլխավոր հրամանատարի» պոստում Երմոլովին փոխարինեց գեներալ Պասկևիչը: Վերջինս հանձնարարեց Գրիբոյեդովին՝ վարել Թուրքիայի և Պարսկաստանի հետ ունեցած բոլոր արտաքին հարաբերությունները:

Գրիբոյեդովի համար սկսվում է դիվանագիտական և հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության շրջան: Նրա անմիջական մասնակցությամբ մշակվում են Անդրկովկասում խաղողագործության, շերամապահության, տնտեսության այլ ճյուղերի զարգացման միջոցառումներ, նախատեսվում է Թիֆլիսում բացել առևտրական բանկ, հանրային գրադարաններ, նահանգային ուսումնարաններ, հրատարակել թերթեր և այլն: Նրա խորհրդով Պասկևիչը դիմում է ֆինանսների մինիստրություն՝ Կովկաս գործուղելու համար փորձված մասնագետների, «վիճակագրական, ազգագրական, տեղագրական ու ֆինանսական առումով երկրամասն ուսումնասիրելու նպատակով»: Գրիբոյեդովի անունը կապված է նաև Քուռ գետը նավարկելի դարձնելու նախագծի և «Մի քանի նկատառումներ Վրաստանի և նրա սահմանակից մարզերի վերաբերյալ» գրության հետ, ուր մեծ տեղ է հատ-



digitised by A.R.A.R.@

## Մամուլի տեսություն

# ԳՈՒԳԱՐՔ

„ГУГАРК"

Գուգարքի շրջանի կուսակցական, սովետական կազմակերպությունները, գյուղի աշխատավորները զգալի աշխատանք են կատարել ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, տասներորդ հնգամյակի անցած տարիների ստանձնած պարտավորությունների կատարման ու գերակատարման առումով: Հատկապես արգասաբեր էր հնգամյակի երրորդ՝ վճռական տարին: Կատարվել ու գերակատարվել են բոլոր տեսակի անասունների գլխաքանակի ավելացման, անասնապահական և բուսաբուծական մթերքների արտադրության ու պետհանձնման տարեկան պարտավորությունները: Այդ ժամանակամիջոցում կոլտնտեսություններում ու սովխոզներում կառուցվել ու շահագործման են հանձնվել արտադրական նոր օբյեկտներ, համալրվել են մեքենայական պարկերը:

Շրջանի աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի պլենումում արտասանած ծրագրային զեկուցումը:

Հուլիսյան պլենումից հետո «Գուգարք» լրագիրն իր էջերում պարբերաբար լուսաբանել է պլենումի որոշումները: Ընթերցողը հաճախ է հանդիպում **Շրջանի աշխատավորները ծանոթանում, հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումի որոշմանը** խորագրին: Այս առիթով լրագրում ելույթ են ունեցել տարբեր բնագավառների աշխատողներ:

Այսպես, գյուղտեխնիկայի շրջանային միավորման կուսբյուրոյի քարտուղար Ք. Պետրոսյանը (**Գյուղտեխնիկայի անխափան աշխատանքի համար**, № 81) պատմում է միավորման կոլեկտիվի հաջողությունների մասին: Գյուղատնտեսական մեքենաների նորոգման արհեստանոցի կոլեկտիվը պլանով նախատեսված 175 հազար ռուբլու փոխարեն տվել է 191 հազար ռուբլու արտադրանք: Գերակատարվել են նաև արտադրանքի իրացման, բեռնատար ավտոմեքենաների, տրակտորների, կոմբայնների և հին պահեստամասերի նորոգման պլանները:

**Կյանքի և աշխատանքի ծրագիր** հոդվածում (№ 81) Մեղրուտի սովխոզի դիրեկտորի տեղակալ Ա. Հովհաննիսյանն ընթերցողներին ծանոթացնում է իրենց սովխոզի դաշտավարների ու մեխանիզատորների գործունեությանը: Անասնապահության բնագավառի աշխատողները հաջողությամբ են եզրափակել հնգամյակի երրորդ տարվա առաջին կիսամյակը: Նրանցից ետ չեն մնում նաև դաշտավարներն ու մեխանիզատորները: Նրանք պարտավորվել են անթերի կատարել կերի կուտակման աշխատանքները: Իսկ Ժ. Կիրակոսյանը (**Ծանոթանալով պլենումի որոշումներին**, № 83) հաղորդում է Վահագնիի պետական տնտեսության երկրագործների ու անասնապահների աշխատանքի մասին: Նրանք կատարել են ընթացիկ տարվա առաջին կիսամյակի անասնապահական մթերքների արտադրության ու պետգնման պլանները: Կթվոր-անասնապահները նոր նախադրյալներ են ստեղծել երկրորդ կիսամյակում ևս հաջողության հասնելու համար: Իսկ դաշտավարները ձեռնամուխ են եղել կերի կուտակման աշխատանքներին:

Վահագնիի պետական տնտեսության երկրագործները, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներն ընդունելով որպես աշխատանքի ծրագիր, գրում է հեղինակը, ձգտում են կատարել ու գերակատարել կերի կուտակման պլանային առաջադրանքները:

Նույն պետական տնտեսության կաթնանասնապահական ֆերմայի կթվոր-անասնապահներին է նվիրված Ս. Գևորգյանի՝ **...Երգն արդար վաստակի** ակնարկը (№ 93): «Սուսամբարի ուրթ» սարամասից տուն դարձած կթվոր-անասնապահները հպարտությամբ էին պատմում իրենց նվաճումների մասին: Չնայած բնակլիմայական վատ պայմաններին, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ստացվել է 18 տոննա ավելի կաթ: Պետական տնտեսությունում բոլորը նաչում են կթվորուհիներ Գյուլիների Վարդումյանին, Սիրուն Բուլղադարյանին, Մորֆիկա Ռուստամովային: Մեծ հաջողություններ ունի կթվոր-անասնապահների բրիգադը: Նրանք կատարել են հորթերի աճեցման առաջադրանքները: «Փոքրիկ ինտերնացիոնալ ընտանիք է այս բրիգադը, գրում է հեղինակը, ուր այնպես համերաշխ ու մտերիմ, իրար կողքկողքի աշխատում են հայ ու ադրբեջանցի կթվորուհիները, օգնում միմյանց: Այդ նրանց՝ Խեյրան Վալիևայի, Վարսենիկ Մայիլյանի, միշտ կենսուրախ Յարար Քյարիմովայի և մյուսների նվիրված աշխատանքով է, որ բրիգադը, նախորդ տարվա համեմատությամբ, 13 տոննա ավելի կաթ է ստացել»:

Մի այլ հոդվածից տեղեկանում ենք (**Արձագանքում են լավ գործերով**) Լերմոնտովոյի պետական տնտեսության անասնապահության բնագավառի աշխատողների հաջողություններին: Ժամանակին վերացնելով եղած թերությունները՝ նրանք զգալի չափով գերակատարել են կաթի, մսի արտադրության, ինչպես և պետհանձնման կիսամյակի առաջադրանքները: Լրագիրը հավաստիացնում է, որ պետական տնտեսության անասնապահները ջանք չեն խնայի անասնագլխաքանակի ավելացման, մսի արտադրության և պետվաճառքի պլանների անթերի կատարման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում հատկապես խոսվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության որակի բարելավման մասին: Այս առնչությամբ լրագիրը բազմաթիվ հոդվածներ է տպագրել՝ նվիրված արդյունավետության ու որակի բարձրացման հարցերին:

Մթերումների և որակի պետական գլխավոր տեսուչ Գ. Գանջալյանը **Առաջադրանքները կատարվեցին, բայց...** (№ 95) հոդվածում ուսանելի է համարում շահումյանցի անասնապահների փորձն ու դրական աշխատանքը: Նրանցից ետ չեն մնում նաև լեռնապատցիները ու հալավարցիները: Խոսելով շրջանի նվաճումների մասին՝ հոդվածագիրն անդրադառնում է և թերացումներին, նշում, որ որոշ պետական տնտեսություններ չեն կատարել մսի պետվաճառքի վեց ամսվա պարտավորությունները: Դեռևս ցածր է տեղերում իրացվող անասունների միջին կենդանի քաշը:

Որակի հարցերին է նվիրված նաև մթերման գրասենյակի պետ Հ. Գրիգորյանի հոդվածը: Նա հիմնականում քննադատում է այն տնտեսություններին, որոնք ցածրորակ արտադրանք են տալիս, որը և բացասաբար է անդրադառնում շրջանի ընդհանուր ցուցանիշների վրա:

Այս տարի շրջանի տնտեսությունները զգալի քանակությամբ կաշվեհումք են վաճառել պետությանը: Սակայն մի շարք տնտեսություններ հանձնել են պետական ստանդարտին չհամապատասխանող հումք: Լրագիրը պարտավորեցնում է մթերող կազմակերպություններին կատարել կուսակցության պահանջը՝ հրաժարվել ցածրարդյունավետ, անշահավետ աշխատանքի մեթոդներից, գյուղատնտեսության զարգացումն ապահովել գյուղատնտեսական մթերքների արտադրության ինտենսիվացման միջոցով, ամեն կերպ ջանալ բարելավել դրանց որակը, ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց ստանալ առավելագույն օգուտ:

**Ոչ միայն քանակ...** (№ 106) հոդվածում կաթի գործարանի կուսկազմակերպության քարտուղար Ռ. Ծախկույանը ներկայացնում է հնգամյակի երրորդ տարվա իրենց նվաճումները: Այդ ժամանակամիջոցում բարելավվել է կաթի որակը, կատարվել են միջարտադրամասային սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները: Միաժամանակ նա քննադատում է այն արտադրամասերի աշխատողներին, որոնք տարեսկզբին թերակատարել էին իրենց պլանները: Արտադրության գիտական կազմակերպման, աշխատանքային կարգապահության բարձրացման, անվտանգության կանոնների ճիշտ կիրառման շնորհիվ բարձրացել է կաթի և կաթնամթերքների որակը:

Գյուղատնտեսության հետագա վերելքի ծրագրի իրականացումն առնչվում է կապիտալ շինարարության ապահովման հետ: Մեր կուսակցությունը միշտ էլ մեծ հոգածությամբ է վերաբերվել գյուղում կատարվող շինարարության նկատմամբ: ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո շատ բան է արվել այդ բնագավառում: Գյուղերում շահագործման են հանձնվել նորանոր օբյեկտներ: Այս առթիվ լրագիրը տպագրել է «Գյուղշին» № 3 տրեստի կուսկազմակերպության քարտուղար՝ Վ. Կողյանի՝ **Ոգեշնչման աղբյուր** (№ 81) և Հակոբյանի՝ **Ոգեշնչման աղբյուր**... **շող մեկնարկից ոգևորված** (№ 95) հոդվածները: Նա պատմում է իրենց տրեստի կոլեկտիվի հասումների, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման մասին: Շինարարները ժամանակին շահագործման են հանձնել 1.300 աշակերտական տեղով դպրոցներ, մանկապարտեզներ՝ 280 երեխաների համար: Զլոբինյան մեթոդով աշխատող 40 տնտհաշվարկային բրիգադներ սոցիալիստական մրցության առաջավորներ են: Նա քննադատում է շինարարական այն կազմակերպություններին, որոնք չեն կատարել առաջին կիսամյակի պլանային առաջադրանքները:

Լրագրում հաճախ են հանդես գալիս նաև շարքային աշխատողներ: Այսպես, **Պարտքի**





digitised by A.R.A.R.@

զգացումով (№ 108) թղթակցությունում ավտովարորդ Լ. Վարդումյանը պատմում է իր կոլեկտիվի՝ ՀՍՍՀ գյուղական շինարարության մինիստրության № 3 ավտոբազայի աշխատողների մասին: Նրանց պատշաճ սպասարկմամբ է զգալիորեն պայմանավորված Գուգարքի, Սխիանի, Գորիսի, Կալինինոյի, Ստեփանավանի, Ախուրյանի և այլ շրջանների արտադրական, կենցաղ-կուլտուրական օբյեկտների կառուցումն ու շահագործման հանձնումը: ...Իմ բոլոր ուժերն ու եռանդը կներդնեմ, գրում է նա, կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման համար, իմ մասնակցությունը բերելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի կողմից գյուղատնտեսության հետագա զարգացման մասին կուսակցության ու կառավարության որոշումների կենսագործմանը, որն առավել ևս սրտամոտ է ինձ, քանի որ ծնվել ու մեծացել եմ գյուղում, տեսել ծննդավայրիս՝ Վահագնիի օր-օրի վերափոխվող դեմքը, ծաղկող կյանքն ու կենցաղը:

Կերի արտադրության բարելավմանը, առաջիկա տարիներին կերի արտադրության մասնագիտացմանը, բարձր ինդուստրացված ճյուղերի ստեղծմանն է նվիրված ՀԿԿ Գուգարքի շրջկոմի քարտուղար Վ. Թորոսյանի՝ **Մրցապայքարն սկսված է** (№ 97) հոդվածը: Դրվատելով շրջանի մի շարք տնտեսությունների գործունեությունը, հեղինակը քննադատում է այն տնտեսություններին (Դեբետ, Անտառամուտ, Մեղրուտ, Դարպաս և այլն), որոնք բավարար չափով չեն կատարել առաջին կիսամյակի անասնապահական մթերքների արտադրության և պետհանձնման պլանները:

**Հանքահետախույզները՝ գյուղին** խորագիրը կրող հոդվածով հանդես է եկել Փամբակի երկրաբանական-հանքահետախուզական արշախմբի կուսբյուրոյի քարտուղար Մ. Ցիկինան: Երկրաբանական-հանքահետախուզական խմբի կոլեկտիվը շեֆական օգնություն է ցույց տալիս գյուղերին: Նրանք բետոնապատել են Ֆիոլետովոյի պետական տնտեսության սիլոսահորը, իսկ կերի կուտակման աշխատանքների համար շատ մեքենաներ են տրամադրել Դարպասի, Դեբետի, Եղեգնուտի սովխոզներին, ակտիվ մասնակցել գյուղատնտեսական այլ աշխատանքների:

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների լայն պրոպագանդմանն է նվիրված շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնում կազմակերպված սեմինար-խորհրդակցությունը, որի մասնակիցները հավաստիացրին, որ, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները ընդունելով որպես աշխատանքային ուղեցույց, կանեն ամեն ինչ, որպեսզի լավ կազմակերպվի գյուղի աշխատավորների կուլտուրական հանգիստը:

«Գուգարք» լրագիրը հետևողականորեն, հմտությամբ ու բանիմացորեն է պրոպագանդում ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի ծրագրային որոշումները:

## Լեռնագործ

Արթիկի շրջանի աշխատավորները բացառիկ հետաքրքրությամբ ու պարտքի խոր գիտակցումով ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում **ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին** ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, պլենումի որոշումը, ինչպես և պլենումի հավանությանն արժանացած գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման և դրա արդյունավետության բարձրացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած մի շարք որոշումներ:

Շրջանի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները ջանում են բոլոր միջոցները ձեռնարկել հուլիսյան պլենումի որոշումները հաջողությամբ կատարելու համար: Նրանք լիահույս են, որ կհասնեն գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության նշանակալի աճի: Գյուղում ծնվեցին նոր, հայրենասիրական նախաձեռնություններ: Շրջանի երկրագործներն ու անասնապահներն ավելի լայնորեն են ծավալել սոցիալիստական մրցությունը և ձգտում են արժանի ավանդ ներդնել ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կատարման գործում: Ինչպես նշված է «Լեռնագործի» № 83-ում, շրջանի աշխատավորները, հաջողությամբ պայքարելով տարերքի դեմ, ձեռնամուխ են եղել կերի կուտակման աշխատանքներին: Առանց պարապուրդի են գործում հնձի և փոխադրող մեքենաները, ագրեգատները. աշխատանքային օրն արդյունավետ են օգտագործում մեխանիզատորները: Մրցության առջևից են ընթանում Լուսակերտի, Հոռոմի, Հայրենյացի կոլտնտեսությունները: Այստեղ ինչպես հարկն է հոգում են խոտի որակի համար, պահպանելով մշակման տեխնոլոգիան: Նրանք գիտեն, որ մթերքների արտադրության ավելացման գործում էական նշանակություն ունի հյութալի կերը:

**Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները** խորագրի ներքո զետեղված է **Արագացնել զարգացման տեմպերը** հոդվածը (№ 83), ուր նշվում է խոշոր եղջերավոր անասունների մատղաշի աճեցման ու բտման՝ Փոքր Մանթաշի պետական-կոլտնտեսային ձեռնարկության միջտնտեսային կոոպերացման փորձի մասին: ՍՄԿԿ Կենտկոմի «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» որոշման կենսագործումը պայմանավորված է նորաստեղծ տնտեսության կենսունակությամբ և արդյունավետությամբ: Այնուհետև թերթում նշվում է, որ գյուղատնտեսության հետագա վերելքի համար ծավալվող պայքարի նոր փուլին պետք է համապատասխանեն նաև կուսակցական ղեկավարման առավել բարձր մակարդակը, մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքի կատարյալ մեթոդները: Զգտելով դրան՝ կուսբյուրոն և ձեռնարկության դիրեկցիան ջանք չեն խնայի ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործումը ինչպես հարկն է ղեկավարելու համար:

**Լայն թափ գյուղում սոցիալիստական մրցությանը** (№ 84) հոդվածում լրագիրը տեղեկացնում է, որ Գիգանտ սովխոզի օրինակով բերքն անկորուստ հավաքելու և պահպանելու, երկրին ավելի շատ կաթ, միս, բուրդ, գյուղատնտեսական այլ մթերքներ հանձնելու համար պայքարի են ելել Հայրենյացի, Մանթաշի, Տուֆաշենի, Հոռոմի աշխատավորները: Շատ հոդվածներ են հրապարակվում **Կյանքի կոչենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները** (№ 84), **Բոլոր ուժերը ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործմանը** (№№ 96, 94, 104) և այլ խորագրերով: № 85-ում Ս. Պողոսյանը գրում է. «ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումը մեծ եռանդ ու ոգևորություն բերեց Սարատակի կոլտնտեսության ճակնդեղագործներին: «Հեկտարից 220-ի փոխարեն՝ 300 ցենտներ շաքարահումք»— այս նշանաբանով են դաշտ դուրս եկել հարյուրից ավելի ճակնդեղագործներ:

Հարվածային տարվա առաջին կիսամյակում արգասաբեր է եղել շրջանի անասնապահների պայքարը անասնապահական մթերքների արտադրության ավելացման համար. պետությանը վաճառվել ու հանձնվել են ավելի շատ անասնապահական մթերքներ: Զգալիորեն բարելավվել է արտադրվող մթերքների որակը:

Անասնապահության բնագավառում տեղ գտած թերություններն են վերհանված **Հաջողությունները առկա են, բայց... (№ 90)»** հոդվածում:

1978 թվականի առաջին կիսամյակի պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման մարզում զգալի հաջողությունների են հասել Լուսակերտի, Մանթաշի, Անուշավանի, Սարատակի, Արևշատի, Գետափիի, Տուֆաշենի, Նոր Կյանքի կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները: Սակայն անասնապահական մթերքների որակի բարձրացման գործում առանձին տնտեսություններում կան լուրջ թերություններ. այդ հետևանք է անասունների անբավարար կերակրման ու խնամքի: Դեռևս մեծ թիվ են կազմում անկումները և հարկադիր մորթը, անբավարար են մայրական կազմի պտղատվության ցուցանիշները: Գեղանիստի, Սպանդարյանի, Մեղրաշենի կոլտնտեսությունների, Պեմզաշենի և Սարալանջի պետական տնտեսությունների ղեկավարները միջոցառումներ չեն ձեռնարկում առաջին կիսամյակի պլանային առաջադրանքների կատարման համար: Անասունների անկումները մեծ տոկոս են կազմում Գեղանիստի, Սպանդարյանի, Վարդաքարի կոլտնտեսություններում, Պեմզաշենի և Սարալանջի սովխոզներում:

«Լեռնագործի» էջերում հաճախակի հանդես են գալիս կուսակցական ղեկավար աշխատողներ, կոլտնտեսային վարչությունների նախագահներ, պետական տնտեսությունների դիրեկտորներ, կուսկազմակերպության քարտուղարներ: **Արձագանքում են առաջավորների նախաձեռնությանը** խորագրի ներքո զետեղված **Կգերակատարենք առաջադրանքը** (№ 101) հոդվածում ահա թե ինչ է գրում Հոռոմի կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Ավդալյանը. «Մեր առջև նպատակ ենք դրել գերազանցել հեկտարի բերքատվության առաջադրանքը, 20 տոկոսով գերակատարել շաքարահումքի մթերման պլանը: Տարերքի պատճառած վնասը կարողացանք վերացնել լավ մշակության, արդյունավետ պարարտացման և ոռոգման շնորհիվ: Իսկ Նոր Կյանքի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Հ. Ասատրյանը գրում է, որ իրենց տնտեսության աշխատավորները ջերմորեն ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները, որոնք բխում են գյուղի մարդկանց շահերից, նրանց պահանջներից: Ուրախանալու շատ բան կա անասունների տոհմային գործի կազմակերպման ասպարեզում: Հոտի վերարտադրության, արհեստական սերմնավորման նանապարհով 116 տոկոսով կատարվել է խոշոր եղջերավոր անասունների, իսկ 187 տոկոսով՝ մանրի գլխաքանակի պլանը: Գլխավորելով մրցությունը՝ կոմունիստները





digitised by A.R.A.R.@

իրենց տնից են տանում աշխատավորներին՝ անթերի կենսագործելու հնգամյակի առաջադրանքները:

Լրագրի էջերից տեղեկանում ենք, որ 1978-ը շրջանի համար այնքան էլ նպաստավոր չի եղել: Տարերային աղետները ոչնչացրել են աճեցրած բերքի մեծ մասը: Սակայն շրջանի երկրագործները չեն հուսալքվել. նրանք շարունակում են պայքարել բարձր բերքի համար:

**Լուրջ նվաճում** (№ 102) հոդվածում Գետափիի կոլտնտեսային վարչության նախագահ Գ. Մաթևոսյանը գրում է. «Ստեղծված խանդավառությունը, աշխատանքների ճիշտ կազմակերպումը հիմք հանդիսացան, որպեսզի մենք հաջողությամբ հաղթահարենք բնության դժվարությունները: Անցած ժամանակահատվածում կարողացանք նաև նվաճել արտադրական կարևոր բնագծեր: Դեռևս օգոստոսի 1-ին փակեցինք պետությանը կաթի վաճառքի ինն ամսվա պլանը»: **Գալիս է հացը** (№102), **Տեսնել լավը, նայել առաջ** (№ 104) և այլ հոդվածներում ներկայացված է հացագործների ջանադիր աշխատանքը: **Կյանքի կոչենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները** խորագրի ներքո կարդում ենք **Բոլոր ուժերը՝ խնդիրների լուծմանը** (№ 98) հոդվածը: Հեղինակը՝ Հայրենյացի կոլտնտեսության վարչության նախագահ Ն. Հարությունյանը, գրում է, որ չնայած կարկտահարվել են արտերը, բայց դարձյալ հեկտարի բերքատվության առաջադրանքը կգերազանցվի 4—5 ցենտներով: Դաշտավարները, մեխանիզատորները ու անասնապահները իրենց ուժերը նվիրաբերել են հարվածային տարվան:

«Լեռնագործը» անտարբեր չէ թերությունների ու թերացումների նկատմամբ. լրագրի էջերում քննադատվում են ետ մնացողները, շրջանի տնտեսական առաջընթացը կասեցնողները: Նման աշխատողների անբարեխղճության հետևանք էր այն, որ Արթիկի շրջանի տնտեսությունների կողմից պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների 13 տոկոսն ուներ միջինից ցածր գիրություն: Այդ մասին նշվեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում:

Անտարակույս, այսուհետ ևս «Լեռնագործը» իր էջերը կտրամադրի ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքին, կօգնի շրջանի առջև դրված խնդիրների լուծմանը:



**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿԾՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01559 Պատվեր 2 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 17.000 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 31/I-1979 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ— Ընտիր երկեր: *Հ. 3: «Հայաստան» հրատ., 1978:*

Ֆ. ԷՆԳԵԼՍ— Կենսագրություն: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 15: «Հայաստան» հրատ., 1978:*

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ— Երկերի լիակատար ժողովածու *(հինգ հատորով): Հ. 5: 1918 թ. մայիսի 29—սեպտեմբերի 20: «Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ— Ստեփան Շահումյան: *«Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Ստեփան Շահումյան *(պատմակենսագրական ակնարկ): Ե., ԳԱ հրատ., 1978:*

Վ. ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ, Վ. ՈՍԿԱՆՅԱՆ— Հայ-ռուսական պատմական կապերը և Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին: *Ե., ԳԱ հրատ., 1978:*

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ— Սոցիալիզմի քաղաքական սիստեմի ղեկավար ուժը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Լ. ԲԱՅՐԱՄՅԱՆ— ՍՍՀՄ-ում պատերազմի պրոպագանդան արգելվում է: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ— Գվարդիական դրոշի ներքո: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հավերժություն: Ռուս բանաստեղծները Հայաստանին: *Ռուսերեն և հայերեն: Ե., «Սովետական գրող», 1978:*

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ— Սովետական Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցը: *Ե., «Լույս» հրատ., 1978:*

**К. МАРКС — Капитал.** Критика политической экономии. Т. 1. Книга 1, Процесс производства капитала. М., Политиздат, 1978.

**В. И. ЛЕНИН — О некоторых особенностях исторического развития марксизма. — Исторические судьбы учения Карла Маркса. — Три источника и три составных части марксизма. — Карл Маркс.** М., Политиздат, 1978.

**НАДЕЖДА КОНСТАНТИНОВНА КРУПСКАЯ. Биография.** М., Политиздат, 1978.

**Х. БАРСЕГЯН — Степан Шаумян.** Биография. Изд. «Айастан», 1978.

**Навеки вместе.** К 150-летию вхождения Восточной Армении в состав России. Изд. «Айастан», 1978.

**Борьба идей в современном мире.** В 3-х томах. Т. 3. Развивающиеся страны: проблемы и идеологические течения. М., Политиздат, 1978.

**Н. БИККЕНИН — Социалистическая идеология.** М., Политиздат, 1978.

**Всегда с народом.** Фотоальбом о поездке Леонида Ильича Брежнева в районы Сибири и Дальнего Востока. М., «Планета», 1978.

**КПСС.** Справочник. Изд. 4-е, доп. и перераб.. М., Политиздат, 1978.

**Г. КУЛИКОВА — Конституция СССР — Конституция развитого социализма, строящегося коммунизма.** М., «Знание», 1978.

**Социально-экономическая роль социалистического государства.** Коллективная монография. М., «Мысль», 1978.

**Л. СТОЛОВИЧ — Философия красоты.** М., Политиздат, 1978.

**П. ЕРЕМЕЙ — Секретный узник.** Повесть об Эрнсте Тельмане. М., Политиздат, 1978.

**Н. БЕЛОСТОЦКАЯ — Ораторское искусство.** Хрестоматия. М., Политиздат, 1978.

**Г. ЯНАЕВ — Роль ВЛКСМ в сплочении международного молодежного движения.** М., «Знание», 1978.

digitised by A.R.A.R.@

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ԱՎՏՈՄԱՏ ՉԱՓԻՉ

Գազերի արտանետած փոշու ռադիոիզոտոպային РИЗГ—1 չափիչն այդպիսի առաջին ավտոմատ սարքն է մեր և ՏՓԽ-ի անդամ մյուս երկրներում։ Մինչև օրս օգտագործվող «Приз», «Олеандр» և ոչ ավտոմատ այլ սարքերը նախատեսված չէին տաք և խոնավ արտադրամասերում բանելու համար։ РИЗГ-ը նորմալ գործում է մինչև +150°C ջերմաստիճանում։ Այսպիսի չափիչն ամենից առաջ անհրաժեշտ է մետալուրգիական և քիմիական, լեռնահանքային արդյունաբերության, ինչպես նաև շինանյութերի արտադրության մեջ, այսինքն՝ այնտեղ, ուր պետք է մշտապես և հետևողականորեն վերահսկել մթնոլորտ արտանետված գազերի մեջ փոշու պարունակությունը։ Սարքը թորիչում խտացնում է օդի որոշակի քանակության մեջ եղած փոշու կաթիլները, ապա չափում նստվածքի կշիռը։ Հաշվողական բլոկն ստացված տվյալներն արտահայտում է մգ/մ$^{3}$-ով։ Արդյունքը գրանցվում է ինքնագիր ցուցատախտակին ու ժապավենին։ Այդպիսով, անընդմեջ և ավտոմատ վերահսկվում է 1-ից մինչև 1.000 մգ/մ$^{3}$-ի փոշոտվածությունը։ Մեկ հերթափոխում РИЗГ-ն ութ անգամ որոշում է օդի աղտոտման աստիճանը։

## ԿԼԻՇԵ՝ ԹՂԹԻՑ

Այժմ լայնորեն տարածված են օպերատիվ պոլիգրաֆիայի մեքենաները՝ բազմապատկիչ օֆսեթ ավտոմատները։ Սակայն դրանց համար անհրաժեշտ են ցեխիցիտ համաձուլվածքից պատրաստված շրջանակներ։ Ֆիննական «Ալստրեմ» կոնցեռնը թողարկել է սարքեր, որոնք պատրաստում են էժանագին շրջանակներ «Զիննֆարբ» տեսակի թղթից. այդ շահավետ է և հարմար։ Միաժամանակ թուղթը հարմար է պատճենահան բոլոր տեսակի մեքենաներին։ Թղթե շրջանակները պատրաստվում են հետևյալ կերպ. նախ՝ պատճենահանվում է էլեկտրաստատիկ սովորական ապարատով, հետո այն ջերմաֆիքսվում և մշակվում է ճնշմամբ։ Ապա. ներթարկվելով քիմիական պրոցեսի, թուղթը չի խոնավանում, չի գունաթափվում ջրում. ներկը կպչում է միայն տեքստին։ Նման թղթե շրջանակով կարելի է հանել ութ հազար պատճեն։ Նախապատրաստումը տևում է կես րոպե։

## ՀՍԿԱ ՏՐԱԿՏՈՐ

Ամերիկյան «Նոզեոն մէնյուֆէկչուրինգ» ֆիրման թողարկել է գյուղատնտեսական մի տրակտոր, որը համարվում է աշխարհում ամենամեծը։ Այն 40,74 տոննա է և գործում է 558 կիլովատ (760 ձիաուժ) հզորությամբ 16 գլանաձև շարժիչներով։ 2.4 մետր տրամագիծ ունեցող ութ դողերի վրա տեղադրված այս տրակտորը նախատեսված է բամբակի և բանջարեղենի արտերի համար և պետք է քաշի 7,4 մետր լայնության գութան, վարելով հողը մոտ 80 և ավելի սմ խորությամբ։ Տրակտորիստի խցիկում կա կոնդիցիոներ, ռադիոկայան և նույնիսկ՝ հեռուստասարք գութանի աշխատանքին հետևելու համար։

## ՑԱԾՐ ՋԵՐՄՈՒԹՅՈՒՆՆ ԷԼ ԲԱՎԱՐԱՐ Է

Այժմ ողջ աշխարհում մեծ ուշադրություն են նվիրում էներգիայի այնպիսի աղբյուրներին, որոնք մինչև օրս անտեսվել են։ Ճապոնական «Իննուէ-ջապէքս ռիսերչ» ֆիրման Անգլիայում պատենտավորել է էլեկտրաէներգիայի ստացման համար համեմատաբար ցածր ջերմության աղբյուրների ջերմաօգտագործման եղանակ։ Այդպիսի աղբյուրներ են ծառայել օգտագործված տաք ջրերը կամ արդյունաբերական ձեռնարկությունների գազերը, ստորերկրյա տաք ջրերը կամ նույնիսկ ներքին այրման շարժիչի սառեցման սիստեմի տաքացրած ջրերը։ Ճապոնական գյուտարարներն այդ ջերմությամբ աշխատեցրել են շոգետուրբինը։ Իհարկե, գոլորշի ստացվում է ոչ թե ջրից, այլ հեշտությամբ եռացող հատուկ հեղուկից։ Այն գոլորշիանում է լավ ջերմահաղորդիչ ծակոտկեն թիթեղի վրա (պատենտավորված է նաև նման թիթեղի պատրաստման եղանակը)։ Գոլորշին պտտեցնում է տուրբինը էլեկտրագեներատորով, իսկ հետո հեղուկը խտացվում և կրկին գոլորշիացվում է նույն տաքացված թիթեղի վրա։ Ցիկլը կրկնվում է։

digitised by